# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**11** ՆՈՅԵՄԲԵՐ, 1982
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении


## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



### ՍՍՀՄ—60. ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ



### ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ● ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ




ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎ

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ

# ԴԻՄՈՒՄԸ

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆԸ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Թանկագի՛ն ընկերներ:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, ամբողջ սովետական ժողովուրդը ծանր կորուստ կրեցին: Կյանքից հեռացավ Լենինի մեծ գործի հավատարիմ շարունակող, բոցաշունչ հայրենասեր, ականավոր հեղափոխական և խաղաղության, կոմունիզմի մարտիկ, արդիականության քաղաքական ու պետական խոշորագույն գործիչ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը:

Լ. Ի. Բրեժնևի ամբողջ բազմակողմանի գործունեությունը, անձնական ճակատագիրը անբաժանելի են սովետների երկրի պատմության կարևորագույն փուլերից: Կոլեկտիվացումն ու ինդուստրացումը, Հայրենական մեծ պատերազմը և ետպատերազմյան վերածնունդը, խոպանի յուրացումը և տիեզերքի հետազոտությունների կազմակերպումը նաև բանվոր դասակարգի պանծալի զավակ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի կենսագրության ուղենիշներն են: Ամենուրեք, ուր էլ որ նրան ուղարկում էր կուսակցությունը, Լեոնիդ Իլյիչը անձնուրացորեն, իրեն հատուկ եռանդով և հաստատակամությամբ, համարձակությամբ և սկզբունքայնությամբ էր պայքարում հանուն նրա վեհ գաղափարների:

Ընկեր Բրեժնևի անվան հետ, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղարի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի պոստերում նրա անխոնջ աշխատանքի հետ են սովետական մարդիկ, ամբողջ աշխարհի մեր բարեկամները իրավամբ կապում կուսակցական ու պետական կյանքի լենինյան նորմերի հետևողական հաստատումը, սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը: Նա իմաստնաբար ուղղություն էր տալիս կուսակցության լենինյան շտաբի՝ նրա Կենտրոնական կոմիտեի, Կենտկոմի քաղբյուրոյի գործունեությանը, համերաշխ կոլեկտիվ աշխատանքի հմուտ կազմակերպման օրինակ ցույց տալով: Նրան ականառու դեր է պատկանում զարգացած սոցիալիզմի փուլում կուսակցության տնտեսական ու սոցիալ-քաղաքական ստրատեգիայի մշակման և իրականացման, ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու կուրսի սահմանման ու իրականացման, մեր երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման ասպարեզում:

Անանց են Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ծառայությունները միջազգային ասպարեզում մեր կուսակցության քաղաքականության՝ խաղաղության ու խաղաղ համագործակցության, լարվածության թուլացման ու զինաթափման, իմպերիալիզմի ագրեսիվ նկրտումներին վճռականորեն հակահարված հասցնելու, միջուկային աղետի կանխման քաղաքականության ձևավորման ու իրա-



կանացման գործում: Մեծ է նրա ներդրումը համաշխարհային սոցիալիստական ընկերակցության համախմբման, միջազգային կոմունիստական շարժման զարգացման ասպարեզում:

Քանի դեռ բաբախում էր Լեոնիդ Իլյիչի սիրտը, նրա խոհերն ու գործերը ամբողջովին ենթարկված էին աշխատավոր մարդկանց շահերին: Աշխատավոր զանգվածների հետ նա միշտ կապված էր կենսական, անխզելի կապերով: Բոլոր մայրցամաքների կոմունիստների, հարյուր միլիոնավոր մարդկանց գիտակցության մեջ նա եղել է և կմնա որպես լենինյան գաղափարայնության, հետևողական ինտերնացիոնալիզմի, հեղափոխական լավատեսության և մարդասիրության մարմնավորում:

Ծանր է մեր կորուստը, խորն է մեր վիշտը: Այս վշտալի ժամին Սովետական Միության կոմունիստները, բոլոր աշխատավորները է՛լ ավելի սերտորեն են համախմբվում ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեի, նրա ղեկավար միջուկի շուրջը, որը ձևավորվել է Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի բարերար ազդեցության ներքո: Ժողովուրդը հավատում է կուսակցությանը, նրա հզոր կոլեկտիվ բանականությանն ու կամքին, ամբողջ սրտով պաշտպանում նրա ներքին և արտաքին քաղաքականությունը: Սովետական մարդիկ լավ գիտեն. Լենինի դրոշը, Հոկտեմբերի դրոշը, որով համաշխարհային պատմական հաղթանակներ են նվաճվել, հուսալի ձեռքերում է:

Կուսակցությունն ու ժողովուրդը զինված են ՍՄԿԿ XXIII—XXVI համագումարների մշակած կոմունիստական ստեղծարար աշխատանքի հոյակապ ծրագրով: Այդ ծրագիրն անշեղորեն կենսագործվում է: Կուսակցությունը այսուհետև էլ ամեն ինչ կանի բարձրացնելու ժողովրդի բարեկեցությունը՝ արտադրության ինտենսիվացման, նրա արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, ՍՍՀՄ պարենային ծրագրի կատարման հիման վրա:

Կուսակցությունը այսուհետև էլ համակողմանի հոգատարություն կցուցաբերի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության դաշինքի ամրապնդման, սովետական հասարակության սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնության, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության ամրապնդման մասին, աշխատավորներին մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով գաղափարապես կոփելու մասին:

Անշեղ է սովետական ժողովրդի խաղաղության կամքը: Ոչ թե պատերազմի նախապատրաստություն, որը ժողովուրդներին դատապարտում է իրենց նյութական ու հոգևոր հարստությունների անիմաստ վատնման, այլ խաղաղության կայունացում՝ ահա վաղվա ուղենիշ գիծը: Այդ ազնիվ գաղափարով են տոգորված խաղաղության 80-ական թվականների ծրագիրը, կուսակցության և սովետական պետության ամբողջ արտաքին քաղաքական գործունեությունը:

Մենք տեսնում ենք միջազգային իրադրության ամբողջ բարդությունը, խաղաղ գոյակցությունը խարխլելու, ժողովուրդներին թշնամանքի և ռազմական առճակատման ուղին հրելու իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների փորձերը: Բայց դա չի կարող սասանել խաղաղությունը պաշտպանելու մեր վճռականությունը: Մենք անհրաժեշտ ամեն ինչ կանենք, որ ռազմական արկածախնդրությունների սիրահարները հանկարծակիի չբերեն սովետական երկիրը, որ պոտենցիալ ագրեսորը իմանա. նրան անխուսափելիորեն խորտակիչ պատասխան հարված է սպասում:

Ապավինելով իր հզորությանը, ցուցաբերելով մեծագույն զգոնություն ու զսպվածություն, պահպանելով անշեղ հավատարմություն իր արտաքին քաղաքականության խաղաղասիրական սկզբունքներին ու նպատակներին, Սովետական Միությունը հաստատակամորեն կպայքարի հանուն այն բանի, որ մարդկությունից վանի միջուկային պատերազմի սպառնալիքը, հանուն լարվածության թուլացման, հանուն զինաթափման:

Այդ պայքարում մեզ հետ են սոցիալիզմի եղբայրական երկրները, ազգային ու սոցիալական ազատագրության մարտիկները, բոլոր մայրցամաքների խաղաղասեր երկրները, երկրագնդի բոլոր ազնիվ մարդիկ: Խաղաղու-

թյան քաղաքականությունն արտահայտում է մարդկության արմատական կենսական շահերը, այդ իսկ պատճառով ապագան պատկանում է այդ քաղաքականությանը:

Սովետական ժողովուրդը ի դեմս կուսակցության տեսնում է իր փորձառու կոլեկտիվ առաջնորդին, իմաստուն ղեկավարին և կազմակերպչին: Կուսակցության ամբողջ գործունեության գերագույն նպատակն ու իմաստը բանվոր դասակարգին, աշխատավոր ժողովրդին ծառայելն է: Կուսակցության և ժողովրդի անսասան միասնությունը եղել է և մնում է սովետական հասարակության անխորտակ ուժի աղբյուրը:

ՍՄԿԿ-ն արբությամբ է գնահատում աշխատավորների վստահությունը, մշտապես ամրապնդում իր կապերը մասսաների հետ: Ժողովուրդը իրականում համոզվել է, որ մեր կուսակցությունը իրադարձությունների ամեն տեսակ շրջադարձի, ամեն մի փորձության դեպքում մնում է իր պատմական առաքելության բարձրության վրա: ՍՄԿԿ-ի ներքին և արտաքին քաղաքականությունը, որ մշակվել է Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ղեկավարությամբ, այսուհետև էլ կկենսագործվի հետևողականորեն ու նպատակասլացորեն:

Լ. Ի. Բրեժնևի կյանքն ու գործունեությունը միշտ էլ կոմունիստական կուսակցությանը և սովետական ժողովրդին հավատարմորեն ծառայելու ոգեշընչող օրինակ կլինեն:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը վստահություն են հայտնում, որ կոմունիստները, բոլոր սովետական մարդիկ բարձր գիտակցականություն ու կազմակերպվածություն կդրսևորեն, լենինյան կուսակցության ղեկավարությամբ իրենց անձնվեր ստեղծագործական աշխատանքով կապահովեն կոմունիստական շինարարության պլանների կատարումը, մեր սոցիալիստական հայրենիքի հետագա բարգավաճումը:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ

*Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը և Մինիստրների խորհուրդը Հայաստանի կոմունիստների, աշխատավորների, ամբողջ հայ ժողովրդի կողմից խոր վիշտ են հայտնում Սովետական Միության կոմունիստական կուսակցության ու սովետական պետության, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ականավոր գործիչ, Լենինի և մեծ Հոկտեմբերի գործի հավատարիմ շարունակող, բոցաշունչ հայրենասեր և ինտերնացիոնալիստ, խաղաղության ու սոցիալական առաջադիմության մարտիկ, Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի մահվան կապակցությամբ: Դադարեց բաբախելուց այն մարդու սիրտը, որի մեծ, վառ կյանքը անմնացորդ նվիրաբերվեց կոմունիստական կուսակցությանը, սովետական ժողովրդին, կոմունիստական պայծառ իդեալների հաղթանակի համար մղվող պայքարին հավատարմորեն ծառայելուն:*

*Ղեկավարելով մեր լենինյան կուսակցության մարտական շտաբը, լինելով բազմազգ սովետական պետության ղեկավարը, Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը հսկայական ավանդ է ներդրել կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկայի մեջ, ՍՄԿԿ-ի ու Սովետական Միության ներքին ու արտաքին քաղաքականության մշակման ու իրականացման գործում: Նա մշտական հոգատարություն էր ցուցաբերում մեր սոցիալիստական հայրենիքի հզորության անշեղ աճի նկատմամբ, յուրաքանչյուր միութենական հանրապետության նյութական ու հոգևոր ծաղկման, ժողովրդի բարեկեցության բարձրացման նկատմամբ:*

*Աշխարհի խաղաղության պահպանման ու ամրապնդման, միջազգային անվտանգության ու համագործակցության ապահովման օգտին եռանդագին գործունեությամբ և անդուլ պայքարով, հոգեկան բացառիկ հատկություններով Լեոնիդ Իլյիչը վաստակել էր բարի կամքի տեր բոլոր մարդկանց ջերմ սերը և մեծ հարգանքը:*

*Այս վշտալի ժամին Հայաստանի կոմունիստները, աշխատավորները բոլոր սովետական մարդկանց հետ միասին գլուխ են խոնարհում Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի պայծառ հիշատակի առջև:*

*Նրանք իրենց շարքերը է՛լ ավելի սերտորեն են համախմբում ՍՄԿԿ-ի լենինյան Կենտկոմի, նրա քաղբյուրոյի շուրջը, ամբողջ սրտով պաշտպանում են կոմունիստական կուսակցության ներքին ու արտաքին իմաստուն քաղաքականությունը և լի են վճռականությամբ՝ անշեղորեն կենսագործելու ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումները, անձնվեր աշխատանքով այսուհետև էլ ամրապնդելու մեր մեծ սոցիալիստական հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորությունը:*

*Բոլշևիկյան կուսակցության և սովետական ժողովրդի հավատարիմ զավակ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի անունը, որն իր ամբողջ կյանքը նվիրաբերեց կոմունիստական շինարարության մեծ գործին ծառայելուն, միշտ կապրի Սովետական Հայաստանի կոմունիստների, աշխատավորների, ամբողջ ժողովրդի սրտերում:*

| ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ | ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ | ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ |
| --- | --- | --- |

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1982 թվականի նոյեմբերի 12-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի արտահերթ պլենումը:

Կենտկոմի քաղբյուրոյի հանձնարարությամբ պլենումը բացեց և ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի մահվան կապակցությամբ Կենտկոմի պլենումի անդամները մեկ րոպե վշտալի լռությամբ հարգեցին Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի հիշատակը:

Կենտկոմի պլենումը նշեց, որ կոմունիստական կուսակցությունը, սովետական ժողովուրդը, ամբողջ առաջադեմ մարդկությունը ծանր կորուստ կրեցին: Կյանքից հեռացավ կոմունիստական կուսակցության, սովետական պետության, միջազգային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժման ականավոր գործիչը, խաղաղության բոցաշունչ մարտիկը:

Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը, լենինյան կոմունիստական կուսակցության շարքերում գտնվելով ավելի քան հիսուն տարի, այդ թվում 18 տարի՝ կուսակցության ղեկավարի պոստում, հսկայական ավանդ ներդրեց նրա շարքերի կուռ միասնության, Սովետական Միության քաղաքական, սոցիալ-տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդման գործում: Բացառիկ կերպով մեծ է նրա դերը խաղաղության և միջազգային անվտանգության ամրապնդման գործում: Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի անունը, որի հետ անմիջականորեն կապված են մեր երկրի կյանքում կատարված մեծագործությունները՝ ինդուստրացումը և գյուղատնտեսության կոլեկտիվացումը, Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած պատմական հաղթանակը, մեր հայրենիքի ժողովրդական տնտեսության ետպատերազմյան վերականգնումը, տիեզերքի հետազոտումը, սովետական պետության էկոնոմիկայի, գիտության և մշակույթի զարգացման բոլոր հաջողությունները, ընդմիշտ մտել է Սովետական Միության կոմունիստական կուսակցության, մեր մեծ հայրենիքի պատմության մեջ:

Կենտկոմի պլենումի մասնակիցները խորին ցավակցություն հայտնեցին հանգուցյալի հարազատներին և մերձավորներին:

Կենտկոմի պլենումը քննության առավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրելու հարցը:

Կենտկոմի քաղբյուրոյի հանձնարարությամբ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոն: Նա առաջարկություն մտցրեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրել ընկ. Յու. Վ. Անդրոպովին:



Պլենումը միաձայն ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընտրեց ընկ. Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովին:

Այնուհետև պլենումում հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը: Նա Կենտկոմի պլենումին սրտագին շնորհակալություն հայտնեց ցույց տրված մեծ վստահության՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի պոստում իրեն ընտրելու համար:

Ընկ. Յու. Վ. Անդրոպովը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին, կոմունիստական կուսակցությանը հավաստիացրեց, որ իր բոլոր ուժերը, գիտելիքները ու կենսափորձը կգործադրի հաջողությամբ կատարելու ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներով նախատեսված կոմունիստական շինարարության ծրագիրը, ապահովելու հաջորդայնությունը ՍՍՀՄ-ի տնտեսական և պաշտպանական հզորության հետագա ամրապնդման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման, խաղաղության ամրապնդման խնդիրների լուծման գործում, Լ. Ի. Բրեժնևի օրոք վարված լենինյան ներքին ու արտաքին ամբողջ քաղաքականության իրականացման գործում:

Դրանով պլենումն ավարտեց իր աշխատանքը:

# ԸՆԿԵՐ ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ՃԱՌԸ

*Ընկերնե՛ր։*

*Մեր կուսակցությունը և երկիրը, ամբողջ սովետական ժողովուրդը ծանր կորուստ կրեցին։ Դադարեց բաբախելուց Սովետական Միության կոմունիստական կուսակցության և սովետական պետության ղեկավար, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ականավոր գործիչ, բոցաշունչ կոմունիստ, սովետական ժողովրդի հավատարիմ զավակ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի սիրտը։*

*Կյանքից հեռացավ արդիականության խոշորագույն քաղաքական գործիչը։ Հեռացավ մեր ընկերն ու բարեկամը, մեծ հոգու և մեծ սրտի տեր մարդը, զգայուն և բարյացակամ, կարեկից և խորապես հումանիստ մարդը։ Անսահման նվիրվածություն գործի նկատմամբ, անզիջում խստապահանջություն իր և ուրիշների նկատմամբ, իմաստուն շրջահայացություն պատասխանատու որոշումներ ընդունելիս, սկզբունքայնություն և համարձակություն պատմության խոշոր շրջադարձերում, մշտական հարգանք, զգայուն և ուշադիր վերաբերմունք մարդկանց նկատմամբ՝ ահա այն հրաշալի հատկանիշները, որոնց համար Լեոնիդ Իլյիչին գնահատում և սիրում էին կուսակցության և ժողովրդի մեջ։*

*Խնդրում եմ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի պայծառ հիշատակը հարգել մեկ րոպե լռությամբ։*

*Լեոնիդ Իլյիչը ասում էր, որ իր կյանքի ամեն մի օրը անբաժանելի է այն գործերից, որոնցով ապրում են Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, ամբողջ սովետական երկիրը։ Եվ դա իրոք այդպես էր։*

*Երկրի ինդուստրացումը և գյուղատնտեսության կոլեկտիվացումը, Հայրենական մեծ պատերազմը և ետպատերազմյան վերականգնումը, խոպանի յուրացումը և տիեզերքի հետազոտումը՝ այս բոլորը սովետական ժողովրդի աշխատանքի ու պայքարի ճանապարհի մեծ ուղենիշներն են և միևնույն ժամանակ՝ կոմունիստ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի կենսագրության ուղենիշները։*

*Լեոնիդ Իլյիչի անվան ու գործերի հետ են անխզելիորեն կապված սոցիալիստական մեծ ընկերակցության երկրների հզորության աճը և նրանց բազմակողմանի համագործակցության խորացումը, համաշխարհային կոմունիստական շարժման ակտիվ մասնակցությունը մեր դարաշրջանում մարդկության առջև կանգնած պատմական խնդիրների լուծմանը, աշխարհում ազգային-ազատագրության և սոցիալական առաջադիմության բոլոր ուժերի համերաշխության ամրապնդումը։*

*Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը երախտագետ մարդկության հիշողության մեջ առհավետ կմնա որպես ժողովուրդների խաղաղության և անվտանգության համար, մարդկության վրա կախված համաշխարհային միջուկային պատերազմի սպառնալիքի վերացման համար մղվող պայքարի հետևողական, կրքոտ և անխոնջ մարտիկ։*

*Մենք լավ գիտենք, որ խաղաղությունը իմպերիալիստներից խնդրելով ձեռք չես բերի։ Այն կարելի է լոկ նվաճել՝ հենվելով սովետական զինված ուժերի անխորտակելի հզորության վրա։ Որպես կուսակցության ու պետության ղեկավար, որպես ՍՍՀՄ պաշտպանության խորհրդի նախագահ, Լեոնիդ Իլյիչը մշտապես ուշադրություն էր նվիրում այն բանին, որ երկրի պաշտպանունակությունը գտնվեր արդի պահանջների մակարդակին։*

*Այստեղ՝ այս դահլիճում հավաքվել են նրանք, ովքեր մտնում են մեր կուսակցության շտաբի կազմի մեջ, որը տասնութ տարի անընդմեջ գլխավորում էր Լեոնիդ Իլյիչը։*

*Մեզանից յուրաքանչյուրը գիտե, թե նա ինչքան ուժ և հոգի էր ներդնում համերաշխ կոլեկտիվ աշխատանքի կազմակերպման մեջ, այն բանի մեջ, որ այս շտաբը ճշմարիտ լենինյան կուրս վարեր։ Մեզանից յուրաքանչյուրը գիտե, թե Լեոնիդ Իլյիչը ինչպիսի անգնահատելի ավանդ է ներդրել բարոյաքաղաքական այն առողջ մթնոլորտի ստեղծման գործում, որն այսօր բնորոշ է մեր կուսակցության կյանքին ու գործունեությանը։*

*Լեոնիդ Իլյիչի անվան հետ են կապված մեր կուսակցության սկզբունքային պայքարը ի պաշտպանություն մարքսիզմ-լենինիզմի, զարգացած սոցիալիզմի տեսության մշակումը, կոմունիստական շինարարության ամենահրատապ խնդիրների լուծման ուղիների մշակումը։ Համաշխարհային կոմունիստական շարժման մեջ նրա գործունեությունը իրավամբ արժանացել է եղբայրական կուսակցությունների, մեր արտասահմանյան դասակարգային եղբայրների ամենաբարձր գնահատականին, սոցիալիզմի օգտին, կապիտալի ճնշման դեմ, կոմունիստական մեծ իդեալների հաղթանակի համար մղվող պայքարի մեր ընկերների բարձր գնահատականին։*

*Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի կյանքի թելը կտրվեց, երբ նրա խոհերը, ջանքերը նպատակամղված էին ՍՄԿԿ XXVI համագումարի, դրան հաջորդած Կենտկոմի պլենումների սահմանած տնտեսական, սոցիալական ու կուլտուրական զարգացման խոշորագույն խնդիրների լուծմանը։ Այդ խնդիրների իրականացումը, մեր կուսակցության ու սովետական պետության՝ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ղեկավարությամբ մշակված ներքին ու արտաքին քաղաքական կուրսի հետևողական կենսագործումը մեր առաջնահերթ պարտքն է։ Եվ դա կլինի մեր լավագույն տուրքը մեզանից հեռացած ղեկավարի պայծառ հիշատակին։*

*Մեծ է մեր վիշտը։ Ծանր է մեր կրած կորուստը։*

*Այս իրադրության մեջ մեզանից յուրաքանչյուրի պարտքն է, յուրաքանչյուր կոմունիստի պարտքն է է՛լ ավելի խտացնել մեր շարքերը, է՛լ ավելի սերտորեն համախմբվել կուսակցության Կենտրոնական կոմիտեի շուրջը, իր պոստում, իր կայնքում որքան կարելի է շատ բան անել սովետական ժողովրդի բարօրության համար, խաղաղության ամրապնդման համար, կոմունիզմի հաղթանակի համար։*

*Սովետական ժողովուրդը անսահմանորեն վստահում է իր կոմունիստական կուսակցությանը։ Վստահում է այն պատճառով, որ կուսակցության համար չեն եղել և չկան այլ շահեր, քան սովետական մարդկանց կենսական շահերը։ Արդարացնել այդ վստահությունը՝ նշանակում է առաջ ընթանալ կոմունիստական շինարարության ուղիով, ձգտել մեր սոցիալիստական հայրենիքի հետագա բարգավաճման։*

*Մենք, ընկերներ, ունենք այնպիսի ուժ, որը մեզ օգնել է և օգնում է ամենադժվարին պահերին, ուժ, որը մեզ հնարավորություն է ընձեռում լուծել ամենաբարդ խնդիրները։ Այդ ուժը մեր կուսակցական շարքերի միասնությունն է, այդ ուժը կուսակցության կոլեկտիվ իմաստությունն է, նրա կոլեկտիվ ղեկավարությունը, այդ ուժը կուսակցության ու ժողովրդի միասնությունն է։*

*Մեր պլենումը այսօր գումարվել է՝ հարգելու Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի հիշատակը և ապահովելու այն գործի շարունակումը, որին նա նվիրեց իր ողջ կյանքը։*

*Պլենումը պետք է լուծի Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղարի ընտրության հարցը։*

*Ընկերներին խնդրում եմ արտահայտվել այս հարցի շուրջը։*

# ԸՆԿԵՐ Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ ՃԱՌԸ

*Թանկագի՛ն ընկերներ։*

*Քաղբյուրոն ինձ հանձնարարել է հանդես գալ Կենտկոմի սույն արտահերթ պլենումի մասնակիցների առջև։*

*Կենտկոմի մեր արտահերթ պլենումը, իրոք, արտակարգ բնույթ է կրում։ Երկիրը և կուսակցությունը խոր սգի մեջ են։ Կյանքից հեռացավ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը։*

Սովետական ժողովուրդը կորցրեց ականավոր ղեկավարին, որը գրեթե երկու տասնամյակ կանգնած էր կուսակցության ու պետության գլուխ, իր բոլոր ուժերն ու հսկայական ընդունակությունները նվիրաբերելով հանուն սովետական մարդկանց երջանկության, հանուն մեր երկրում կոմունիստական շինարարության գործի։ Մենք կարող ենք ասել, որ մարդկությունը կորցրեց խաղաղության իդեալների, ազատության ու սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի մեծ, իսկապես անխոնջ մարտիկին։ Մենք՝ սովետական կոմունիստներս, սոցիալիստական երկրների մեր եղբայրները, համաշխարհային կոմունիստական շարժման մեր զինակիցները կորցրինք լենինյան գործի տաղանդավոր շարունակողին, մի մարդու, որից սովորում էինք անսահման նվիրվածություն աշխատավորության շահերի նկատմամբ։

Բառերը անզոր են արտահայտելու մեր կորստյան ամբողջ վիշտը։ Բայց այս վշտալի օրերին մեզ բոլորիս համար մեծ օգնություն են ծառայում ամենքիս համար թանկագին Լեոնիդ Իլյիչի տված դասերը։

Լեոնիդ Իլյիչը շռայլորեն օժտված էր ամբողջովին հասարակության շահերով, ժողովրդի շահերով ապրելու ձիրքով։ Այդպես է եղել միշտ՝ սկսած պատանեկան տարիներից մինչև կյանքի վերջին օրը։

Լեոնիդ Իլյիչը լավ գիտեր, որ սոսկ բարի ցանկությունները դատարկ հնչյուն են։ Ճիշտ մտքեր արտահայտելը քիչ է, հարկավոր է դրանք ամրապնդել հստակ կազմակերպչական աշխատանքով, դրանք հասկանալի և մատչելի դարձնել աշխատավորության լայն զանգվածների համար։ Նա սիրում էր մարդկանց։ Նա կարողանում էր վստահել մարդկանց։

Լեոնիդ Իլյիչը բացառիկ արիության տեր մարդ էր։ Նա այդ բանը ապացուցել էր ոչ միայն Հայրենական մեծ պատերազմում, որին նա մասնակցեց առաջին օրվանից մինչև վերջին օրը։ Արիությունը նրան չդավաճանեց ամբողջ կյանքի ընթացքում։ Եվ նա յուրաքանչյուր ընկերոջ մեջ բարձր, շատ բարձր էր գնահատում համարձակությունը, սկզբունքայնությունը, տոկունությունը ամեն մի փորձության ժամանակ։

Լեոնիդ Իլյիչի կողքին լինելը, նրան լսելը, նրա մտքի սրությունը, հնարագիտությունը, կենսասիրությունը ակնբախորեն զգալը մի դպրոց էր բոլորիս համար, ում բախտ է վիճակվել նրա հետ աշխատել ձեռք ձեռքի տված։

Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը մեզ թանկարժեք ժառանգություն է թողնում։ Մեր 18 միլիոնանոց կուսակցությունը միասնական է և համախմբված։ Սովետական ժողովուրդը անսահմանորեն հավատում է կուսակցության իմաստությանը։ Մեր կյանքի նորմերն են դարձել խստապահանջությունը և հարգանքը կադրերի նկատմամբ, անխախտ կարգապահությունը և օգտակար համարձակ նախաձեռնությունների պաշտպանությունը, անհանդուրժողությունը բյուրոկրատիզմի ամեն տեսակ դրսևորումների նկատմամբ և մշտական հոգատարությունը մասսաների հետ կապերը զարգացնելու, սովետական հասարակության իսկական դեմոկրատիզմի նկատմամբ։

Նրա հիշատակի հանդեպ, կուսակցության ու երկրի հանդեպ մեր պարտքն է պահպանել ու զարգացնել ղեկավարության այդ ոճը, հոգածությամբ վերաբերվել այն ամենին, ինչ իր խոսքով ու գործով մեզ կտակել է Լեոնիդ Իլյիչը։ Այն բանի համար, որ դա այդպես էլ կլինի, ամուր գրավական է ծառայում կուսակցության ղեկավար կորիզը, նրա կենտրոնական կոմիտեն, Լեոնիդ Իլյիչի վճռական մասնակցությամբ կազմավորված քաղբյուրոն։

Քաղբյուրոյի անունից ուզում եմ ամենախորին համոզմունք հայտնել, որ մեր պլենումը ամբողջ երկրի, ամբողջ աշխարհի առջև կցուցադրի, որ կուսակցությունը հաստատուն կերպով առաջ կընթանա լենինյան կուրսով, որը ժամանակակից փուլում հստակորեն ու ամբողջությամբ արտահայտված է ՍՄԿԿ XXIII—XXVI համագումարների որոշումներում։ Մեր կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությունը, որի մշակման և իրականացման գործում հսկայական ավանդ է ներդրել Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը, կշարունակվի վստահորեն, հետևողականորեն ու նպատակասլաց կերպով։

Մեր կողմնորոշիչները եղել են, են և կլինեն ժողովրդի բարօրությունը և աշխարհի խաղաղության պահպանումը։



Մենք ունենք սոցիալ-տնտեսական ծավալուն, լավ կշռադատված ծրագիր։ էկոնոմիկան պետք է լինի խնայողական։ Այսպիսին է կուսակցության ցուցումը։ Իսկ դա նշանակում է ինդուստրիալ և ագրարային սեկտորների տեխնիկական վերազինում, կառավարման կատարելագործման և, իհարկե, աշխատանքի կազմակերպման բարելավում, աշխատանքի արտադրողականության աճ։

Այս բազայի վրա է անշեղորեն զարգանալու մեր պետության էկոնոմիկան, դրա հիման վրա է բարձրանալու ժողովրդի բարեկեցությունը։ Այդ նույն բազայի վրա է ամրապնդվելու երկրի պաշտպանունակությունը։

Մենք ունենք խաղաղության ութսունական թվականների լայն, կոնկրետ ծրագիր։ Այդ ծրագիրը համապատասխանում է ժողովրդի իղձերին։ Լարվածության թուլացում, զինաթափում, կոնֆլիկտային իրավիճակների հաղթահարում, միջուկային պատերազմի սպառնալիքի վերացում՝ ահա այն խնդիրները, որ մենք դնում ենք մեր առջև։ Մենք հուսալի անվտանգություն ենք ուզում մեզ համար, մեր բարեկամների համար, աշխարհի բոլոր ժողովուրդների համար։

Թանկագի՛ն ընկերներ։

Մենք բոլորս ակնբախորեն գիտակցում ենք, որ անչափ դժվար է լրացնել այն կորուստը, որ մեզ պատճառեց Լեոնիդ Իլյիչի մահը։ Այժմ կրկնապատիկ, եռապատիկ կարևոր է կուսակցության մեջ գործերը վարել կոլեկտիվ կերպով։ Կուսակցական բոլոր մարմիններում համերաշխ, համատեղ աշխատանքը կապահովի ինչպես կոմունիստական շինարարության, այնպես էլ միջազգային ասպարեզում մեր գործունեության հետագա հաջողությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, քննարկելով ստեղծված դրությունը, ինձ հանձնարարել է պլենումին առաջարկել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրել ընկեր Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովին։ Կարծում եմ, կարիք չկա պատմելու նրա կենսագրությունը։ Յուրի Վլադիմիրովիչը կուսակցության մեջ և երկրում լավ հայտնի է որպես անձնվեր, լենինյան կուսակցության գործին հավատարիմ կոմունիստ, որպես Լեոնիդ Իլյիչի մերձավորագույն զինակից։

Յուրի Վլադիմիրովիչը բազմակողմանի գործունեություն է ունեցել ներքին ու արտաքին քաղաքականության, գաղափարախոսության բնագավառում։ Նա եղել է թե՛ կոմերիտական ղեկավար, թե՛ խոշոր կուսակցական աշխատող, թե՛ դիվանագետ։ Նա քիչ աշխատանք չի ներդրել սոցիալիստական ընկերակցության ամրապնդման, մեր պետության անվտանգության ապահովման գործում։

Լեոնիդ Իլյիչը բարձր էր գնահատում նրա մարքս-լենինյան համոզվածությունը, կուսակցականությունը, լայն մտահորիզոնը, գործարար և մարդկային աչքի ընկնող հատկությունները։

Քաղբյուրոյի բոլոր անդամներն էլ գտնում են, որ Յուրի Վլադիմիրովիչը լավ է ընկալել ղեկավարման բրեժնևյան ոճը, ժողովրդի շահերի նկատմամբ բրեժնևյան հոգատարությունը, կադրերի նկատմամբ բրեժնևյան վերաբերմունքը, ագրեսորների մեքենայություններին բոլոր ուժերով դիմագրավելու, խաղաղությունը պահպանելու և ամրապնդելու վճռականությունը։

Յուրի Վլադիմիրովիչին բնորոշ են կուսակցական համեստությունը, հարգանքը մյուս ընկերների կարծիքի նկատմամբ և, կարելի է ասել, կոլեկտիվ աշխատանքի կիրքը։ Քաղբյուրոն միահամուռ կերպով գտնում է. ընկեր Անդրոպովը արժանի է Կենտրոնական կոմիտեի վստահությանը, կուսակցության վստահությանը։

Թանկագի՛ն ընկերներ։ Գլուխներս խոնարհելով Լեոնիդ Իլյիչի պայծառ հիշատակի առջև, մենք հանդիսավորությամբ խոստանում ենք, որ անդուլ կերպով կշարունակենք մեր ստեղծարար աշխատանքը։ Այն ամենը, ինչ չհասցրեց իրականացնել Լեոնիդ Իլյիչը, ինչ նրա ղեկավարությամբ կանխանշել է կուսակցությունը, կկատարվի։



ՅՈՒՐԻ ՎԼԱԴԻՄԻՐՈՎԻՉ ԱՆԴՐՈՊՈՎ

# ՅՈՒՐԻ ՎԼԱԴԻՄԻՐՈՎԻՉ ԱՆԴՐՈՊՈՎ

*Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը ծնվել է 1914 թվականի հունիսի 15-ին երկաթուղայինի ընտանիքում, Ստավրոպոլի երկրամասի Նագուտսկայա կայարանում։ Ունի բարձրագույն կրթություն։ ՍՄԿԿ անդամ է 1939 թվականից։*

*16 տարեկան հասակում կոմերիտական Յու. Վ. Անդրոպովը որպես բանվոր աշխատել է Հյուսիս-Օսեթական ԻՍՍՀ Մոզդոկ քաղաքում։ Այնուհետև նրա աշխատանքային կենսագրությունը շարունակվել է վոլգյան նավագնացության նավերում, որտեղ նա աշխատել է որպես նավաստի։*

*1936 թվականից Յու. Վ. Անդրոպովը եղել է կոմերիտական աշխատանքում։*

*Նա ընտրվել է Յարոսլավլի մարզի Ռիբինսկ քաղաքի ջրային տրանսպորտի տեխնիկումի կոմերիտական կազմակերպության ազատված քարտուղար։ Շուտով նրան առաջ են քաշում Ռիբինսկ քաղաքի Վոլոդարսկու անվան նավաշինարանում ՀամԼԿԵՄ Կենտկոմի կոմերիտական կազմակերպչի պաշտոնին։ 1938 թվականին Յարոսլավլի մարզի կոմերիտականները Յու. Վ. Անդրոպովին ընտրում են ՀամԼԿԵՄ Յարոսլավլի մարզկոմի առաջին քարտուղար։ 1940 թվականին Յու. Վ. Անդրոպովը ընտրվում է Կարելիայի ԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար։*

*Հայրենական մեծ պատերազմի առաջին օրերից Յու. Վ. Անդրոպովը Կարելիայում ակտիվորեն մասնակցում է պարտիզանական շարժմանը։ 1944 թվականին ֆաշիստական զավթիչներից Պետրոզավոդսկ քաղաքի ազատագրումից հետո Յու. Վ. Անդրոպովը կուսակցական աշխատանքում է։ Նա ընտրվում է կուսակցության Պետրոզավոդսկի քաղկոմի երկրորդ քարտուղար, իսկ 1947 թվականին՝ Կարելիայի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար։*

*1951 թվականին Յու. Վ. Անդրոպովը ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ փոխադրվում է ՍՄԿԿ Կենտկոմի ապարատ և նշանակվում ՍՄԿԿ Կենտկոմի ենթաբաժնի տեսուչ, իսկ այնուհետև վարիչ։*

*1953 թվականին կուսակցությունը Յու. Վ. Անդրոպովին ուղարկում է դիվանագիտական աշխատանքի։ Նա մի քանի տարի ՍՍՀՄ արտակարգ ու լիազոր դեսպանն էր Հունգարական Ժողովրդական Հանրապետությունում։*

*1957 թվականին Յու. Վ. Անդրոպովը առաջ քաշվեց որպես ՍՄԿԿ Կենտկոմի բաժնի վարիչ։*

*Կուսակցության XXII համագումարում և հաջորդ համագումարներում Յու. Վ. Անդրոպովը ընտրվում է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի անդամ։*

*1962 թվականին Յու. Վ. Անդրոպովը ընտրվում է ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար։*

*1967 թվականի մայիսին Յու. Վ. Անդրոպովը նշանակվում է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր պետական անվտանգության կոմիտեի նա-*

խագահ։ Նույն տարվա հունիսին նա ընտրվում է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյու-
րոյի անդամության թեկնածու։

1982 թվականի մայիսին Յու. Վ. Անդրոպովն ընտրվեց ՍՄԿԿ Կենտկոմի
քարտուղար։

1973 թվականի ապրիլից Յու. Վ. Անդրոպովը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյու-
րոյի անդամ է։

Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը ՍՍՀՄ մի շարք գումարումների Գերա-
գույն սովետի դեպուտատ է։

Բոլոր պոստերում, որտեղ կուսակցության կամքով աշխատել է Յու. Վ.
Անդրոպովը, դրսևորվել է նրա նվիրվածությունը Լենինի, կուսակցության մեծ
գործին։ Նա իր բոլոր ուժերը, գիտելիքներն ու փորձը նվիրաբերում է կուսակ-
ցության որոշումների կենսագործմանը, կոմունիստական գաղափարների հաղ-
թանակի համար մղվող պայքարին։

Հայրենիքին մատուցած մեծ ծառայությունների համար կոմունիստական
կուսակցության և սովետական պետության նշանավոր գործիչ Յու. Վ. Անդրո-
պովին 1974 թվականին շնորհվեց սոցիալիստական աշխատանքի հերոսի կո-
չում։ Նա պարգևատրված է Լենինի չորս շքանշանով, Հոկտեմբերյան հեղա-
փոխության, Կարմիր դրոշի շքանշաններով, Աշխատանքային կարմիր դրոշի
երեք շքանշանով և մեդալներով։

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԱՆՀԱՂԹ ԴՐՈՇՈՎ

ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ և ոչ մի իրադարձու-
թյուն այնպիսի բախտորոշ ներգործություն չի ունեցել
նրա ողջ հետագա ընթացքի վրա, ինչպես Հոկտեմբերյան սոցիալիստական
մեծ հեղափոխությունը։ Այն դրեց կոմունիստական քաղաքակրթության հիմքը,
ամենախոր հեղաշրջում կատարեց մեր երկրի քաղաքական, տնտեսական, սո-
ցիալական և կուլտուրական ողջ կյանքում, անչափ լայն ասպարեզ բացեց նրա
արտադրողական և հոգևոր ուժերի բուռն զարգացման համար։ Այն ընդմիշտ
վերջ դրեց դասակարգային ու ազգային ճնշմանը, արմատապես փոխեց նախ-
կին Ռուսաստանյան կայսրության աշխատավոր մասսաների, ազգերի ու ազ-
գությունների բախտը, նրանց բերեց սոցիալական և ազգային լիակատար
ազատագրում, նրանց առջև բացեց պատմական ստեղծագործության, համա-
խմբման ու փոխօգնության, ինտերնացիոնալ միասնության և բարեկամու-
թյան, ազատ աշխատանքի ու բարգավաճման լայն ուղին։

Հոկտեմբերի հայրենիքը, որի վիթխարի նվաճումները հիացնում են ողջ
առաջադեմ մարդկությանը, սքանչելի օրինակն է այն բանի, թե ինչի կարող
են հասնել հասարակության քաղաքական ղեկավարությունը իրենց ձեռքը
վերցրած, կեղեքումից ազատագրված ստեղծագործ աշխատանքի մարդիկ։
Նրանք հպարտանում են այն բանով, որ Սովետական Միությունը այսօր ամ-
բողջ աշխարհի առջև կանգնած է որպես ամենաարդարացի, ամենամարդասի-
րական հասարակական կարգի երկիր, որի գլխավոր նպատակն է ժողովրդի
բարօրությունն ու երջանկությունը, մի երկիր, որը ընթանում է սոցիալական
առաջընթացի ավանգարդում և վիթխարի ազդեցություն ունենում համաշխար-
հային պատմության ողջ ընթացքի վրա։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակը ռեալ հնարավորություններ ստեղծեց հայ
ժողովրդի սոցիալական ու ազգային կատարյալ ազատագրության համար, նրա
առջև բացեց ստեղծարար աշխատանքի լայն հեռանկարներ։ «Ցարական ինք-
նակալության դեմ Ռուսաստանի պրոլետարիատի մղած պայքարի պատմական
փորձը,— ինչպես նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— Հայաստանի աշխատավոր-
ներին ցույց տվեց ազատության, սոցիալական առաջընթացի միակ ճիշտ
ուղին, հեղափոխական պայքարի, սոցիալական վերափոխումների ուղին»։

Սոցիալիստական հեղափոխության վեհասքանչ նպատակներն ու խնդիր-
ները դարձան հայ ժողովրդի պայքարի խորագույն իմաստը։ Հոկտեմբերի
հաղթանակը, նրա իդեալներն ու մեծ ճշմարտությունը Հայաստանի աշխա-
տավորներին տոգորեցին սեփական հաղթանակի հավատով, պատմական հե-
ռանկար բացեցին նրանց առջև, ոգեշնչեցին, հեղափոխական պայքարի կոչե-
ցին հարազատ երկրում սոցիալական արդարության, ազատության և երջան-
կության հասարակարգ ստեղծելու համար։

Եվ Հայաստանի հինավուրց հողում սովետների համար մղված պայքարը
դարձավ նախկին կայսրության ողջ տարածքում սոցիալիստական հեղափո-
խության հաղթանակի համար մղված ընդհանուր պայքարի օրգանական ու
անբաժանելի մասը։ Մեծ Հոկտեմբերի հաղթանակով ոգեշնչված, Հայաստանի
աշխատավոր մասսաները վճռական պայքարի ելան սովետական իշխանու-
թյուն հաստատելու համար։

Հայաստանի Հեղկոմը 1920 թվականի նոյեմբերի 29-ին կոմունիստական
կուսակցության և բոլոր աշխատավորների անունից դաշնակցական կառավա-
րությունը հայտարարեց տապալված և Հայաստանում հռչակեց սովետական
իշխանություն։ Հայաստանի Հեղկոմի խնդրանքով բանվորագյուղացիական

հանրապետությանը օգնության հասան փառապանծ 11-րդ կարմիր բանակի զորամասերը։

Մեծ Լենինը ջերմորեն ողջունեց իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին։ Նրա գլխավորած սովետական կառավարությունը անհապաղ վճռական միջոցներ ձեռնարկեց նոր սոցիալիստական հանրապետությանը պաշտպանելու և նրան համակողմանի աջակցություն ցույց տալու համար, իր ուժերի ներածին չափ արեց ամեն ինչ, որպեսզի սովետական իշխանությունն ամրապնդվի Հայաստանում և բաղձալի ազատությունը նվաճած ժողովուրդը ոտք դնի սոցիալիզմի կառուցման մեծ ուղին։

Իր ազատության և անկախության համար հայ ժողովրդի դարավոր պայքարը պսակվեց սովետական իշխանության հաղթանակով։ Այն Ռուսաստանի կազմում Հայաստանի տնտեսական, քաղաքական և սոցիալական զարգացման, Ռուսաստանի պրոլետարիատի հեղափոխական շարժման հետ մեր ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի միացման կարևորագույն և օրինաչափ հետևանքը եղավ։

Անցած 62 տարում Սովետական Հայաստանի ձեռք բերած հաջողությունները և՛ բազմահարուստ փորձ է, և՛ նյութ խորհրդածությունների համար, և՛ ոգեշնչման անսպառ աղբյուր ներկա ու ապագա սերունդների համար։ Ուստի այդ ուղին ոչ միայն ապրած ու վերապրած, այլև անմիջականորեն դեպի ապագան ուղղված պատմություն է, մեր ժողովրդի սոցիալիստական պետականության ստեղծման ու զարգացման, նրա ազգային վերածննդի, պայքարի ու ստեղծարար աշխատանքի, նոր կյանքի կառուցման գործում մեծագույն հաղթանակների, անշեղ ու համակողմանի առաջընթացի պատմություն, ռուս մեծ ժողովրդի հետ, մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդների հետ հայ ժողովրդի եղբայրական անխախտ բարեկամության հետագա ամրապնդման պատմություն։

Մեր ժողովուրդը, սոցիալիստական հասարակարգի կառուցման վեհ նպատակով թևավորված, հաղթահարելով բոլոր դժվարությունները, աշխատանքային արիության ու քաջության իսկական հրաշքներ գործեց, տպավորիչ նվաճումներով գրեց ու բազմապատկեց նոր հասարակարգի կազմավորման ու զարգացման տարեգրության փառապանծ էջերը։ Նա համառությամբ ու անձնազոհությամբ, անցյալի ավերակների վրա, շատ դեպքերում փաստորեն զրոյից սկսելով, միանգամայն նոր հիմքի վրա ստեղծեց սոցիալիստական ժողովրդական տնտեսությունը, կառուցեց նոր քաղաքներ ու ավաններ, գործարաններ ու ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ, ճանապարհներ ու ջրանցքներ, բացեց ինստիտուտներ, թատրոններ, թանգարաններ։

Սովետական Հայաստանի աշխատավորության ստեղծարար ուժերն ու հնարավորությունները մեծապես բազմապատկվեցին, երբ այն մյուս հանրապետությունների թվում մտավ ՍՍՀՄ-ի՝ ազատագրված ժողովուրդների միասնական միութենական պետության կազմի մեջ։ ՍՍՀՄ կազմավորումը, որի պանծալի 60-ամյակը նշում ենք այս օրերին, մեծ Հոկտեմբերի գաղափարների հաղթանակն է, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հաղթարշավը։

ՍՍՀՄ վաթսունամյակը նշանակալի իրադարձություն է սովետական ժողովրդի կյանքում, ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի, սոցիալիզմի պատմական նվաճումների վկայությունը։ Այդ փառապանծ տարեդարձին Սովետական Միությունը ամբողջ աշխարհի առջև կանգնում է որպես համատեղ կոմունիզմ կառուցող իրավահավասար հանրապետությունների համերաշխ ընտանիք։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան դրոշի ներքո ստեղծված եղբայրական այդ դաշինքում հայ ժողովուրդը, ինչպես և մեր երկրի մյուս ժողովուրդները, ձեռք բերեցին հզոր հենարան, հուսալի բազա իրենց համակողմանի զարգացման համար, ինդուստրացման, գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման, կուլտուրական հեղափոխության, ժողովրդական կրթության, առողջապահության, գիտության ու տեխնիկայի վերելքի պատմական խնդիրները հաջողությամբ կատարելու համար։



Նախապատերազմյան 20 տարիների ընթացքում հանրապետությունում ստեղծվել էր երկու հարյուրից ավելի արդյունաբերական ձեռնարկություն, որը հնարավորություն տվեց նախահեղափոխական շրջանի համեմատությամբ արդյունաբերական արտադրության ծավալը մեծացնել 32 անգամ։ Լիովին իրականացվեց գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը, երկրագործության արտադրանքը 1913 թվականի մակարդակը գերազանցեց 2,5 անգամ։ Կենսագործվեցին կուլտուրական հեղափոխության լենինյան պլանները, վերջ դրվեց անգրագիտությանը։

Սովետական ժողովուրդների դաշինքի ամրության, նրանց բարոյաքաղաքական միասնության ու համախմբվածության մեծագույն փորձությունը եղավ Հայրենական մեծ պատերազմը։ Սովետների երկիրը, նրա հերոսական ժողովուրդն ու բանակը, նրա հասարակական-պետական կարգը դիմացան այդ ամենածանր փորձությանը և հաղթեցին։ Չարաչար սխալվեցին հիտլերականները, որոնք հույս ունեին պառակտում մտցնել մեր ժողովուրդների միջև։ Սովետական ժողովուրդները, ամբողջ աշխարհի առջև ցուցադրելով իրենց անխախտ հավատարմությունը Հոկտեմբերի իդեալներին, բոլորը մեկ մարդու նման հարազատ կուսակցության կոչով պաշտպան կանգնեցին սիրելի հայրենիքին, ֆաշիստական գազանի դեմ մահացու գոտեմարտում պաշտպանելով իրենց ազատությունն ու անկախությունը։

Հայաստանի հարյուր հազարավոր զավակներ և դուստրեր պատերազմի ահեղ տարիներին ցուցաբերեցին արիություն, քաջություն, անսահման նվիրվածություն սոցիալիստական հայրենիքին։ Սովետական մյուս ժողովուրդների զավակների ու դուստրերի հետ ուս-ուսի, նրանք քաջաբար մարտնչում էին ռազմաճակատներում, մասնակցում պարտիզանական շարժմանը։ Մարտերում ցուցաբերած արիության և խիզախության համար 70 հազարից ավելի հայ ռազմիկներ պարգևատրվեցին մարտական շքանշաններով ու մեդալներով, հարյուրից ավելի մարտիկներ դարձան Սովետական Միության հերոսներ։

Սովետական ժողովուրդների սերտ դաշինքի ու եղբայրական միասնության մեծ ուժը, որը դարձավ թշնամու նկատմամբ նվաճված հաղթանակի վճռական գործոններից մեկը, դա և՛ ստեղծարար աշխատանքի աղբյուրն է, և՛ առաջընթացի, և՛ հոգևոր թռիչքի աղբյուրը։ Աշխատանքային հերոսության հրաշքներ գործելով, մեր ժողովուրդները, համատեղ ջանքերի մեծ լարումով, արագորեն բուժելով պատերազմի վերքերը, կարողացան հետպատերազմյան հնգամյակներում մեծապես բազմապատկել երկրի տնտեսական պոտենցիալը, ապահովել արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության արագ աճը, աննախընթաց բարձունքների հասնել սոցիալ-տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։

Կոմունիստական կուսակցության կողմից ղեկավարվող սովետական մարդկանց պատմական ստեղծագործության հիմնական արդյունքը զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումն է։ Հասուն սոցիալիզմը այնպիսի մի հասարակարգ է, որտեղ, ինչպես նշված է ՍՍՀՄ սահմանադրության մեջ, ստեղծվել են հզոր արտադրողական ուժեր, առաջավոր գիտություն և կուլտուրա, որտեղ շարունակ աճում է ժողովրդի բարեկեցությունը, ավելի ու ավելի բարենպաստ պայմաններ են ստեղծվում անհատի համակողմանի զարգացման համար։ Դա հասուն սոցիալիստական հասարակական հարաբերությունների հասարակություն է, որտեղ սոցիալական բոլոր խավերի մերձեցման, բոլոր ազգերի և ազգությունների իրավական ու փաստական հավասարության հիման վրա առաջացել է պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը։ Դա հայրենասեր ու ինտերնացիոնալիստ աշխատավորների բարձր կազմակերպվածության, գաղափարայնության ու գիտակցականության հասարակություն է։ Դա այնպիսի մի հասարակություն է, որի կյանքի օրենքն է՝ բոլորի հոգատարությունը յուրաքանչյուրի բարօրության մասին և յուրաքանչյուրի հոգատարությունը բոլորի բարօրության մասին։ Դա իսկական դեմոկրատիայի հասարակություն է, որի քաղաքական սիստեմը ապահովում է հասարակական բոլոր գործերի արդյունավետ կառավարումը, աշխատավորների ավելի ու ավելի ակտիվ մասնակցությունը պետական կյանքին, մարդու ռեալ իրա-

վունքների ու ազատությունների զուգակցումը քաղաքացիական պարտքի և պատասխանատվության հետ։

Կուսակցության իմաստուն ազգային քաղաքականության հետևողական իրականացման, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական միասնության շնորհիվ միայն հնարավոր եղավ այն վիթխարի թռիչքը դեպի առաջընթացի գագաթները, որ Հոկտեմբերի դրոշի ներքո կատարեց Հայաստանի աշխատավոր ժողովուրդը, փյունիկի նման հառնելով մոխրից ու ավերակներից։

Սովետական Հայաստանը, որը բազմազգ սովետական պետության միասնական ընտանիքում պատմական ամենակարճ ժամկետում դարձել է հզոր ինդուստրիայի, ժամանակակից բարձր զարգացած գյուղատնտեսության, մեծ գիտության ու բարձր կուլտուրայի հանրապետություն, իր օրինակով հաստատում է մարքսիզմ-լենինիզմի գաղափարների, գիտական կոմունիզմի, ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության կենարար մեծ ուժը։

Սովետական Հայաստանի պատմական նվաճումների մեջ նյութականացված են հեղափոխական ու աշխատանքային սխրանքը աշխատավոր մասսաների, սոցիալիզմի ու կոմունիզմի անձնազոհ կառուցողների բոլոր սերունդների, որոնց առաջին շարքերում Լենինի մեծ գաղափարների հաղթանակի համար մղված պայքարում միշտ ընթացել են առաջընթացի դրոշակակիրները՝ կոմունիստները։

Սովետական Հայաստանի 50-ամյակի տոնակատարության ժամանակ Լ. Ի. Բրեժնևը իրեն հատուկ իմաստունությամբ ընդհանրացրեց հանրապետության անցած սոցիալիստական ուղին։ «Սովետական Հայաստանի պատմական փորձը,— ասաց նա,— կրկին ու կրկին համոզում է, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման շնորհիվ»։

Վերջին հնգամյակների ընթացքում Սովետական Հայաստանում ծնունդ են առել և արագ տեմպերով զարգանում են արդյունաբերության նոր ճյուղեր՝ ռադիոէլեկտրոնային, ճշգրիտ հաստոցաշինական, սարքաշինական ճյուղերը, փոքր տոննաժային քիմիայի նոր ուղղություններ, ավտոմոբիլային, մանրէաբանական, ոսկու կորզման և այլ ճյուղեր։

Ընդլայնվել է արդյունաբերության աշխարհագրությունը։ Արդյունաբերական նոր համալիրներ ու հանգույցներ են ստեղծվել Չարենցավանում, Աբովյանում, Հրազդանում, Ջրվեժում, նոր ձեռնարկություններ են երևան եկել Արարատյան դաշտավայրում, Զանգեզուրում, Սևանի ավազանում և հանրապետության մյուս շրջաններում։ Հայաստանի ձեռնարկությունների թողարկած արդյունաբերական արտադրանքի հարյուրավոր տեսակներ բարձր համբավ են նվաճել ինչպես երկրում, այնպես էլ արտասահմանում։

Հանրապետության արդյունաբերության աշխատողները, կենսագործելով ՍՄԿԿ XXVI համագումարի, Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի որոշումները և սոցիալիստական լայն մրցություն ծավալելով աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման համար, ընթացիկ տարվա անցած ժամանակամիջոցում ևս ապահովել են արդյունաբերական արտադրության հետագա զարգացումը։ 1982 թ. ինն ամիսների արտադրանքի իրացման պլանը կատարվել է 102 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի թողարկումը, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, աճել է 4,7 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 2 տոկոսով, դրա հաշվին ստացվել է արտադրության աճի 45 տոկոսը։ Յուրացվել է արդյունաբերական արտադրանքի ավելի քան 200 նոր տեսակների արտադրությունը։ Արտադրության ընդհանուր ծավալի մեջ որակի բարձրագույն կատեգորիա ունեցող արտադրանքի բաժինը անցել է 19 տոկոսից։

Լայնորեն մասնակցելով աշխատանքի ընդհանուր միութենական սոցիալիստական բաժանմանը, հանրապետությունն այժմ երկրի միասնական ժողովրդատնտեսական համալիրին մատակարարում է ժամանակակից էլեկտրո-



նային հաշվիչ մեքենաներ, փոփոխական հոսանքի գեներատորներ, էլեկտրաշարժիչներ, տրանսֆորմատորներ, կաբելներ և հաղորդալարեր, եռակցման սարքավորումներ, պոմպեր, կոմպրեսորներ, մետաղամշակման հաստոցներ, զանազան սարքեր, ավտոմոբիլներ և ավտոբեռնիչներ, ավտոդողեր, շինարարական նյութեր, քիմիական արդյունաբերության արտադրանք և այլն։ Մեծ պահանջարկ ունեն կոշիկի, գորգերի, տեքստիլ, թեթև ու սննդի արդյունաբերության արտադրանքները։ Դրա հետ մեկտեղ Հայաստանը ամեն տարի եղբայրական մյուս հանրապետություններից ստանում է իր համար անհրաժեշտ մոտ 35 հազար անուն բազմապիսի արտադրանք։

Հայ ժողովրդի բարօրության մասին կոմունիստական կուսակցության մշտական հայրական հոգատարության վառ վկայությունն են վերջին տարիներին հանրապետության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած որոշումները։ Այդ փաստաթղթերում տրված է տնտեսական, սոցիալական, էկոլոգիական բնույթի լայն շրջանակի պրոբլեմների լուծումը, գիտականորեն սահմանված են հանրապետության սոցիալական ու տնտեսական հետագա զարգացման ուղղությունները։ Այդ ամենն իրական նախադրյալներ են ստեղծում Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության ու նրա առանձին ճյուղերի կառուցվածքը բարելավելու համար։

Արդյունաբերության կառուցվածքի ճշգրտման շնորհիվ հանրապետությունում աստիճանաբար իջնում է նրա էներգատար և նյութատար ճյուղերի տեսակարար կշիռը։

Կանխանշված կուրսի իրականացման այն կոնկրետ ծրագիրը, որ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների հիման վրա մշակել են Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմը և հանրապետության կառավարությունը, է՛լ ավելի մեծ չափերով կկիրառվի մոտ ապագայում։ Հետևողականորեն կիրականացվի առանձին նոր մեքենաների ստեղծումից ու արմատավորումից զարգացած սոցիալիզմի համար բնորոշ անցումը մեքենաների բարձր արդյունավետ համակարգերի արտադրության ու մասսայական արմատավորման, որոնք ապահովում են արտադրության բոլոր պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, ձեռքի աշխատանքի բաժնի շեշտակի կրճատումը։ Կզարգանա ագրեգատների, արտադրական գծերի, ունիվերսալ և կառավարող հաշվիչ համալիրների, տեխնոլոգիական պրոցեսների կառավարման ավտոմատացված համակարգերի համար ինֆորմացիայի հաշվառման ու հաղորդման սարքերի, հարմարանքների արտադրությունը։ Առանձնահատուկ ուշադրություն կնվիրվի արդյունաբերության հետագա մասնագիտացմանն ու համակենտրոնացմանը, արդյունաբերական նոր հանգույցների ստեղծմանը և արդեն գործող հանգույցների համակողմանի զարգացմանը։

Էկոնոմիկայի և կուլտուրայի բուռն զարգացումը ապահովելու, աշխատավորների բարեկեցությունը բարձրացնելու գործում վճռական դեր է կատարում կապիտալ շինարարությունը, որը վերջին ժամանակաշրջանում խոշոր մասշտաբներ է ընդունել հանրապետությունում։ Իններորդ և տասներորդ հնգամյակներում ավելի շատ կապիտալ ներդրումներ են կատարվել, քան նախորդ բոլոր 50 տարիների ընթացքում։

Հանրապետությունում մեծածավալ աշխատանքներ են կատարվում շրջակա միջավայրի պահպանության ուղղությամբ։ Երևանում դադարեցված է կալցիում կարբիդի արտադրությունը, փոխվել է Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի պրոֆիլը, մոտակա տարիներին կիրականացվեն կոմպլեքսային միջոցառումներ Ալավերդի—Կիրովական ռեգիոնի մթնոլորտի առողջացման, Քանաքեռի ալյումինի գործարանի վնասակար արտանետվածքների կրճատման ու վերացման նպատակով և այլն։

Բնության պահպանության միջոցառումների պսակը հանդիսացավ Արփա—Սևան 48 կիլոմետրանոց թունելի շինարարության ավարտումը։ Ինժեներական մտքի այս նյութականացված գլուխգործոցը, որն իր նախադեպը չունի համաշխարհային պրակտիկայում, մեր բոլոր եղբայրական ժողովուրդների փոխօգնության արդյունքն է ու նրանց անխախտ բարեկամության հավիտենական հուշարձանը։

Կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման ասպարեզում կատարված ակտիվ ու հետևողական աշխատանքը ապահովեց հանրապետության գյուղատնտեսական արտադրության շեշտակի աճը։ Հայաստանի գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը տասներորդ հնգամյակի տարիներին իններորդ հնգամյակի նույն ցուցանիշի համեմատությամբ մեծացել է 24 տոկոսով։

Կուսակցության ագրարային քաղաքականության նոր փուլ է նշանավորում ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1982 թ.) պլենումում ընդունված պարենային ծրագիրը, որը կոչված է առավել կարճ ժամկետում երկրի բնակչությանը հուսալիորեն ապահովել սննդամթերքներով։ Ինչպես պլենումում նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, դա ո՛չ միայն առաջնահերթ տնտեսական, այլև սոցիալ-քաղաքական հրատապ խնդիր է։ Այն մարմնավորում է նպատակային, կոմպլեքսային մոտեցում պարենային պրոբլեմի լուծմանը։ Այդպիսի մոտեցման կարևորագույն առանձնահատկությունն է իրար հետ շաղկապել, միավորել ինչպես բուն գյուղատնտեսության, այնպես էլ արդյունաբերության, տրանսպորտի, առևտրի՝ դրան սպասարկող ճյուղերի աշխատանքը։

Պարենային ծրագրի կատարումը պահանջում է միլիոնավոր սովետական մարդկանց լարված աշխատանքը։ Ինչպես եղբայրական մյուս հանրապետությունների, այնպես էլ մեր հանրապետության աշխատավորությունը եռանդուն կերպով լծվել է համաժողովրդական այդ մեծ գործին։

Հանրապետությունում կոմպլեքսային միջոցառումներ են իրականացվում գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան է՛լ ավելի զարգացնելու, գյուղատնտեսական արտադրությունը համակենտրոնացնելու և մասնագիտացնելու, հողագործության և անասնապահության առանց բացառության բոլոր ճյուղերի ինդուստրացման համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելու նպատակով։ Լայն ճակատով պայքար է ծավալվել գյուղատնտեսական արտադրության արդյունավետության հետագա բարձրացման, հողային, ջրային, աշխատանքային ռեսուրսների, նյութական միջոցների ռացիոնալ օգտագործման, աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման համար։

Մեծ հեռանկար է բացվում հանրապետության գյուղատնտեսության հետագա զարգացման համար։ Կոլտնտեսային-սովխոզային կարգի սկզբնական փուլերում հանրային արտադրության առավել բնորոշ ու նպատակահարմար կառուցվածքն էր բազմաճյուղ տնտեսությունը։ Այդ կառուցվածքը ժամանակի արտադրողական ուժերի վիճակի, տնտեսությունը վարելու կուտակված փորձի բնական արդյունքն էր։

Այսօր և հեռանկարում, գյուղի արտադրողական ուժերի որակական տեղաշարժերի առկայության պայմաններում, ամբողջ հասակով մեկ ծառանում է արտադրական հարաբերությունների կատարելագործման, աշխատանքի բաժանման պրոցեսների ուժեղացման, ավելի խոշոր համակենտրոնացման և ավելի զարգացած մասնագիտացման պրոբլեմը։

Անճանաչելիորեն վերափոխվել է հայ գյուղը, նրա կուլտուրական դեմքը։ Այսօր հետք անգամ չի մնացել նախահեղափոխական աղքատությունից, գյուղի նախկին տեսքից։ Ըստ էության սովետական իշխանության տարիներին Հայաստանում նորացվել է գյուղական գրեթե ողջ բնակելի ֆոնդը։ Գյուղերն ստացել են սոցիալիստական դարաշրջանի ոգուն համապատասխանող նոր կերպարանք, կառուցապատվել են հարմարավետ, բարեկարգ տներով, դպրոցների, հիվանդանոցների, մշակույթի պալատների, ակումբների գեղեցիկ շենքերով, մարզական կառույցներով, առևտրի ու կենցաղային սպասարկման ժամանակակից օբյեկտներով։ Հայաստանի բնանկարի բնորոշ տարրերն են դարձել հեռուստատեսային վերահաղորդման աշտարակներն ու անտենաների անտառները, որոնք հանրապետության բոլոր անկյուններում ապահովում են հեռուստատեսային հաղորդումների ընդունումը Մոսկվայից ու Երևանից։

Մեր կուսակցության մեծագույն նվաճումներից մեկը եղավ կուլտուրական հեղափոխության լենինյան պլանի լրիվ իրականացումը։ Սոցիալիստական նոր հասարակության համար բնորոշ էր ժողովրդի մտավոր պոտենցիալի կենտրոնացումը հարազատ հողում։ Անցյալում նման երևույթ երբեք չէր



նկատվել։ Նոր հայրենիքը կառուցելու եկան բազմաթիվ գիտնականներ, ինժեներներ, գրողներ, նկարիչներ, ճարտարապետներ, երաժիշտներ, դերասաններ։ Այդ պրոցեսը ղեկավարում էր կոմունիստական կուսակցությունը։

Կուլտուրական հեղափոխության լենինյան ծրագրի կենսագործումը ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ Սովետական Հայաստանում լուծեց ոչ միայն լայն ու ընդհանուր ժողովրդական կրթության, այլև հասարակության կենսագործունեության բոլոր օղակների համար կադրերի մեծ բանակի ստեղծման, գիտության ու մշակույթի աննախընթաց ծաղկման պրոբլեմները։

Այսօրվա Հայաստանի դեմքը բնութագրում է ընդհանուր միջնակարգ կրթությունն ապահովող հանրակրթական դպրոցների, բարձրորակ բանվորական կադրեր պատրաստող պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունների, բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատությունների լայն ցանցը։ Հանրապետության յուրաքանչյուր երրորդ քաղաքացի այսօր սովորում է ուսման այս կամ այն սիստեմում։

Սովետական Հայաստանի կուլտուրական բնանկարի անբաժան բաղադրամասերն են տասնյակ ու տասնյակ պետական ու ժողովրդական թատրոնները, կինոթատրոնները, մշակույթի տներն ու պալատները, մարզական կառույցները։ Բոլոր խոշոր ու միջին աշխատավորական կոլեկտիվներում, ուսումնական հաստատություններում, հիմնարկներում գործում են գեղարվեստական ինքնագործունեության, մարզական խմբակներ ու սեկցիաներ։ Տասնյակ հազար գիտական աշխատողներ կան գիտահետազոտական ինստիտուտներում, բուհերում։ Հանրապետության գիտությունների ակադեմիան, որը գլխավորում է մեր ժամանակի ականավոր գիտնական, Սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոս, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը, մեծ հաջողությունների է հասել սովետական գիտության զարգացման գործում։

Ընդհանրացնելով իր ազգային առաջադիմական ավանդույթները, սովետահայ մշակույթը միաժամանակ եղբայրական ժողովուրդների հոգևոր հարստությունից քաղում է ամեն լավագույնը։ Իրենց հերթին հայ վարպետների նշանակալի ստեղծագործությունները, որոնք ճշմարտացիորեն արտացոլում են սոցիալիստական իրականությունը, հարստացնում են եղբայրական մշակույթները, դառնում ամբողջ սովետական ժողովրդի սեփականությունը։ Հենց այդպիսին է եղել սոցիալիստական դարաշրջանի մշակույթի հանճարեղ ներկայացուցիչներ Ե. Չարենցի, Ա. Թամանյանի, Մ. Սարյանի, Ա. Խաչատրյանի ստեղծագործությունը։

Մշակույթի ծաղկումը սոցիալիստական հասարակարգում արտացոլում է նաև աշխատավորների հոգևոր կյանքի աճած մակարդակը։ Այսօրվա Հայաստանի հարուստ ու բազմապիսի մշակութային կյանքը այն բանի վառ հաստատումն է, թե ինչպիսի անսահման հնարավորություններ են ստեղծված մեր երկրում մասսաների հոգևոր զարգացման համար, այն բանի համար, որ մշակույթի բոլոր նվաճումները դառնան համաժողովրդական սեփականություն։

Հանուն սովետական նոր մարդու, հանուն նրա բարօրության է այսօր աշխատում սովետական հասարակությունը։ Զարգացած սոցիալիզմն ու նրան հատուկ ապրելակերպը ավելի ու ավելի մեծ չափով նյութական, սոցիալական, հոգևոր պայմաններ են ստեղծում հասարակության բոլոր անդամների բովանդակալից, լիարյուն կենսագործունեության համար, անհատի պահանջմունքների բավարարման, նրա տաղանդի, ընդունակությունների բացահայտման, համակողմանի ներդաշնակ զարգացման համար։ Մեր հանրապետության կյանքը, որտեղ այսօր, ինչպես և մեր երկրում ամենուրեք, արվում է ամեն ինչ աշխատավորների նյութական և կուլտուրական աճող պահանջմունքների առավել լրիվ բավարարման համար, նրանց հոգևոր ու մտավոր աճի համար, դրա ամենահամոզիչ ապացույցն է։ Հանրապետությունում, ինչպես և ամբողջ երկրում, շարունակ բարելավվում են մարդկանց կյանքի, աշխատանքի, կենցաղի պայմանները։

Նյութական բարեկեցության անշեղ վերելքը, բնակարանային-կենցաղային պայմանների և բուժսպասարկման բարելավումը նպաստեցին բնակչության արագ աճին, մարդկանց միջին երկարակեցության ավելացմանը։ 1920

թվականին Սովետական Հայաստանի ներկայիս տարածքում ապրում էր 720 հազար մարդ, իսկ այժմ՝ 3 միլիոնից ավելի։

Արտադրողական ուժերի ավելի արագ զարգացման խնդիրների լուծման գործում Հայաստանի կոմկուսը հենվել և հենվում է ՍՄԿԿ-ի մշակած սոցիալիստական տնտեսության կառավարման սկզբունքների վրա և ամենից առաջ քաղաքական ու տնտեսական ղեկավարության միասնության սկզբունքի վրա։ Իրականացնելով էկոնոմիկայի վերելքի կանխանշված միջոցառումները, նա միաժամանակ չթուլացող ուշադրություն է նվիրում մասսաների մեջ տարվող քաղաքական, գաղափարախոսական և դաստիարակչական աշխատանքի բարելավմանը։ Հետևողական պայքար է ծավալվել բացասական երևույթների դեմ, պետական, պլանային ու աշխատանքային կարգապահության խախտումների դեմ, անտարբերության ու վատնողականության դեմ։

Էկոնոմիկայի ղեկավարության մակարդակի հետագա բարձրացման և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բարելավման ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպության ծավալած հետևողական գործունեությունը վառ արտահայտություն գտավ համամիութենական սոցիալիստական մրցության մեջ աշխատավորական Հայաստանի նվաճած մեծ հաղթանակի մեջ։ Մրցության արդյունքներով տասներորդ հնգամյակի բոլոր տարիներին և տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարում Սովետական Հայաստանը հաղթող է ճանաչվել և արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

Ինչպես սովետական ողջ ժողովուրդը, այնպես էլ մեր հանրապետության աշխատավորները ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը դիմավորում են ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումների իրականացման, երկրի էկոնոմիկայի զարգացման, նրա պաշտպանունակության ամրապնդման, սովետական ժողովրդի բարեկեցության և կուլտուրայի բարձրացման ասպարեզում ձեռք բերած նոր նվաճումներով։

Նոր կյանքի պայմաններում մեր ապրած բոլոր տարիների յուրաքանչյուր օրը, յուրաքանչյուր տարին լիովին հաստատել են ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության, սովետական ազատ ժողովուրդների միասնական, հզոր ընտանիքի ստեղծման լենինյան գաղափարի հանճարեղությունն ու կենարարությունը։

Եվ այսօր, մեր նվաճումների բարձունքից մի հայացք գցելով անցած ուղու վրա, կարելի է վստահությամբ ասել. ո՛չ, ոչ մի հրաշք չի կատարվել, և մեր ընթացքի մեջ մեզ պատահական հաջողությունը չի ուղեկցել։ Մեր խարիսխը գիտական կոմունիզմն է՝ մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը։ Մեր անձնակազմն են ռուսը և ուկրաինացին, վրացին ու ղազախը, հայը և լատիշը, ուզբեկը և ադրբեջանցին, էստոնացին ու կիրգիզը, բելոռուսը և տաջիկը, մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների բանվորը, գյուղացին, աշխատավոր մտավորականը, մեր առագաստն է ժողովուրդների լենինյան բարեկամությունը, մեր նավավարը՝ կոմունիստական կուսակցությունը, և մեր նավը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը։ Եվ այսօր, կուսակցության XXVI համագումարի կոչով, մենք գնում ենք դեպի նոր խիզախումներ ու մեծագործություններ, և մեր նավը վստահորեն ու հաղթականորեն ընթանում է դեպի կոմունիստական շինարարության նոր բնագծերը։

---



# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆՆ Է ՄԵՐ ՈՒԺԸ

**Ի. Ա. ԲՈՆԴԱՐԵՆԿՈ**
ՍՄԿԿ Ռոստովի մարզային կոմիտեի
առաջին քարտուղար

Մեր ԵՐԿԻՐԸ ՆՇՈՒՄ է համաժողովրդական մեծ տոնը՝ ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը։ ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-ամյակի մասին» որոշման մեջ ասված է. «ՍՍՀՄ վաթսունամյակը նշանակալի իրադարձություն է սովետական ժողովրդի կյանքում, ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի, սոցիալիզմի պատմական նվաճումների վկայությունը։ Այս փառապանծ տարեդարձին Սովետական Միությունը ամբողջ աշխարհի առջև կանգնում է որպես համատեղ կոմունիզմ կառուցող իրավահավասար հանրապետությունների համերաշխ ընտանիք»։

Մի անգամ ևս համոզվում ես այդ խոսքերի իրավացիությանը, մտովի հետևելով բարեկամական այն կապերին, որոնք արդեն տասնամյակներ շարունակ միացնում են Դոնի մեր երկրամասը Հայաստանի հետ, գնահատելով այն հաջողությունները, որոնցով և՛ մենք՝ ռուսներս, և՛ մեր հայ բարեկամները դիմավորում են համաժողովրդական այս տոնը։

Անքակտելի են Հայաստանը Ռուսաստանի հետ կապող եղբայրական բարեկամության կապերը։ Թերևս դժվար է նշել Ռուսաստանի որևէ այլ երկրամաս, որը պատմականորեն այնպես սերտորեն շաղկապված լինի հայ ժողովրդի հետ, ինչպես խաղաղ Դոնի բարեբեր հողը։ Առանց չափազանցության կարելի է ասել. մեր բարեկամությունը թրծվել է մեր սիրելի հայրենիքի՝ միասնական ու հզոր Սովետական Միության սքանչելի ապագայի համար մղած փառապանծ պայքարում թափված արյամբ ու աշխատանքային քրտինքով։

Դարերի խորքից է սկիզբ առնում ռուս-հայկական դաշինքը։ Տարեգիրները վկայում են, որ դեռևս 900 տարի առաջ Կիևյան Ռուսիայի զորքի շարքերում օտարերկրյա զավթիչների դեմ կռվում էին և հայ զինվորները։

Վերջերս մենք տոնեցինք Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակը. այդ տարելիցը համընկավ մի այլ իրադարձության տարեթվին. 200 տարի առաջ հայերը Ղրիմից գաղթել, վերաբնակվել էին Դոնում։ Դա տեղի էր ունեցել 1778—1779 թվականներին, երբ ռուսական այս գետի ստորին հոսանքներում բնակվեցին տասնյակ հազարավոր հայեր, որոնց նախնիները, ավելի քան ինը դար առաջ, սելջուկներից հալածական, թողել էին հարազատ ծաղկող Անին ու նրա շրջակայքը... Այդպես, Ռուսաստանի քարտեզի վրա հայտնվեց նոր քաղաք՝ Դոնի Նախիջևանը. սովետական տարիներին այն ձուլվեց Ռոստով քաղաքին։ Իսկ մարզում հիմնվեցին հայկական գյու-

Կցասարքերի զինանոցն ընդլայնում, միաժամանակ դրանց որակն են բարելավում «Կարմիր Ակսայի» աշխատավորները։ Նրանց թողարկած մի քանի մակնիշի կուլտիվատորներ արժանացել են պետական որականիշի։

Մարզում լայն աշխատանք է ծավալվել Նովոչերկասկի էլեկտրաքարշների գործարանի վերակառուցման նպատակով (այստեղ պատրաստվում են ԲԱՄ-ի համար նախատեսված հզոր լոկոմոտիվի մասսայական թողարկմանը), բազա է ստեղծվում փոշեմետաղագործության համար, բուռն տեմպերով զարգանում են ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ճյուղերը։

Մարզի ողջ կուսակցական կազմակերպության, Դոնի բոլոր աշխատավորների առաջնակարգ օբյեկտն այսօր, անշուշտ, ատոմային մեքենաշինության հսկան է՝ Ատոմմաշը։ Այդ եզակի գործարանից ոչ հեռու սկսվել է Ռոստովի ատոմային էլեկտրակայանի և էներգետիկ մեքենաշինության խոշոր գործարանի կառուցումը։ Մեր երկրի բոլոր հանրապետություններն իրենց պատվիրակներն են ուղարկել կառուցելու, ինչպես մենք ենք կոչում՝ XXI դարի այդ կառույցը՝ Ատոմմաշը։ Այժմ այստեղ կողք-կողքի աշխատում են մոտ 40 ազգությունների ներկայացուցիչներ։ Արձագանքելով «Ատոմմաշն է կանչում» կոչին՝ կառույց եկան վրացիներ, մոլդավացիներ, թաթարներ, ուզբեկներ, ադրբեջանցիներ, ղազախներ։ Արևաշող Հայաստանը ևս մեզ օգնելու ուղարկեց իր որդիներին ու դուստրերին։ Մեր ռուսական սրտագին շնորհակալությունը դրա համար։

Համաժողովրդական այդ կառույցը երիտասարդության համար դարձավ իբրև քաղաքացի ձևավորվելու լավագույն դպրոց, հնարավորություն ընձեռեց բոլորին և յուրաքանչյուրին՝ դրսևորելու իր ունակությունները։

Օրինակ, ՀամԼԿԵՄ XVIII համագումարի անվան ջոկատի անդամ Լյուդմիլա Բիբիկովան, որը կառույց է եկել Կիրգիզիայից, ջոկատի կոմերիտական կազմակերպիչն է։ Շատ շուտով նա աչքի ընկավ կառույցում։ Ընկերները վստահեցին նրան՝ ընտրելով ժողովրդական դեպուտատների քաղաքային սովետի դեպուտատ։ Չեչենո-Ինգուշեթիայի պատվիրակ Բոստոն Ջամիլովը մեխանիկ է ավտոտրանսպորտային վարչությունում։ Ընդունվել է Նովոչերկասկի պոլիտեխնիկական ինստիտուտի ֆիլիալի նախապատրաստական բաժինը։ Ուկրաինուհի Լյուդմիլա Զակարլյուկը նոր է ավարտել պրոֆտեխուսումնարանը։ ՍՄԿԿ անդամության թեկնածու է։ Հարվածային աշխատանքի, մասնագիտական մեծ վարպետության համար պարգևատրվել է «Աշխատանքային արիության համար» մեդալով։

Մոտ երկու հարյուր ատոմմաշցիներ անձնուրաց աշխատանքի համար պարգևատրվել են ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով։ Նրանցից են՝ ուկրաինացիներ Ա. Սավրանսկին, Յու. Ռադչենկոն, Ի. Դվիդենկոն, մարիացի Ն. Դայունովը, բելոռուս Վ. Կլիմովսկին և Վ. Մուշտան, թաթար Պ. Մամետևն ու Ա. Գալիահմեդովը և շատ ուրիշներ։

Ատոմմաշի բոլոր կոլեկտիվները կանգնեցին աշխատանքային հերթափոխի՝ «ՍՍՀՄ 60-ամյակին՝ 60 հարվածային շաբաթ» նշանաբանով։ Մրցության նպատակն է ստանձնած պարտավորությունների հաջող կատարումը. 1983 թվականին ավարտել Ատոմմաշի երկրորդ հերթի կառուցումը, հնգամյակի տարիներին պատրաստել ռեակտորային սարքավորման հինգ համալիր, շահագործման հանձնել Ռոստովի ատոմային էլեկտրակայանի առաջին էներգաբլոկը։ Այդ կլինի նոր քաղաքի, ժողովուրդների եղբայրության քաղաքի՝ Վոլգոդոնսկի աշխատանքային կոլեկտիվների նվերը հայրենիքին, քաղաք, ուր ապրում և աշխատում են 75 ազգությունների մարդիկ և որի էությունն արտացոլված է արդեն իսկ նշանաբանում՝ «Ատոմմաշը կառուցում է ողջ երկիրը»։

Այս առիթով չեմ կարող մի քանի խոսք չասել այն մասին, թե բազմազգ արտադրական կոլեկտիվների մասսայական ծնունդը և, ինչպես տեսնում եք, ամբողջ քաղաքների ստեղծումը գաղափարախոսական աշխատանքի ինչպիսի վերակառուցում պահանջեց մարզային կուսկազմակերպությունից։

Աշխատավորների, ողջ բնակչության կոմունիստական դաստիարակության նպատակով ծավալվող մեր աշխատանքը կազմակերպում ենք այնպես, որ ինտերնացիոնալ համոզմունքները հաստատվեն ամենօրյա գործնական կյանքում, մարմնավորվեն կոնկրետ գործերում։ Դրա համար, ամենից առաջ, նպատակ է դրվում կոլեկտիվներում եղբայրական բարեկամության մթնոլորտ ստեղծել տարբեր ազգությունների երիտասարդության միջև, համակել ամենքին միասնական աշխատանքային ընտանիքի զգացումով։



Այս աշխատանքում ձևերի ընտրության գործում մեզ համար ուղենիշ է ծառայում Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի Հուշերը։ Գրքում մասնավորապես ասված է, որ աշխատանքային կոլեկտիվում ծնվում է միասնության, շահերի ընդհանրության, պրոլետարական այն համերաշխության զգացումը, որը տարիքով, փորձով, սովորույթներով, ազգությամբ տարբեր միլիոնավոր մարդկանց դարձնում է հզոր, միաձույլ, իսկական հեղափոխական դասակարգ։ Հույժ արտահայտիչ է ներկայացրել Լեոնիդ Իլյիչը ազգային հարաբերությունների էությունը և դրանց ձևավորումը բանվորական միջավայրում, խոսելով հոր՝ Իլյա Յակովլևիչի մասին. «Հայրս տարբերություն չէր դնում աշխատավորների միջև, ինչպես մենք հիմա կասեինք, մարդկանց բաժանում էր ոչ թե ազգային, այլ դասակարգային հատկանիշով։ Եվ ինձ համար այն ժամանակ, հիշում եմ, ուրյադնիկի կամ հարուստ վաճառականի որդին, թեև նրանք էլ ռուսներ էին, օտար էր, իսկ բանվորների, այդ նույն լեհերի, երեխաները յուրայիններ էին»։

Այս մտքերը մեր օրերում ևս այժմեական են։ Եվ ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նախապատրաստվելիս մենք ջանում ենք ինտերնացիոնալ բարեկամության ամրապնդման համար օգտագործել մեր անծայրածիր հայրենիքի բոլոր մասերից եկած պատվիրակներին։ Վոլգոդոնսկում այս հարցերը մշտապես գտնվում են հարվածային կառույցի քաղաքային շտաբի ուշադրության կենտրոնում։ Գաղափարախոսական հանձնաժողովի և կուսկոմիտեների օրակարգի մշտական հարցն է այն։ Այստեղ ավանդական են դարձել ՍՄԿԿ քաղկոմի բյուրոյի անդամների հանդիպումները ինտերնացիոնալ բրիգադների բրիգադավարների և արտադրության առաջավորների հետ։ Այս տարվա ամռանը Վոլգոդոնսկում տեղի ունեցավ այդ բրիգադների ակտիվի հավաք, ուր երիտասարդները անկեղծորեն քննարկեցին իրենց հուզող հրատապ հարցերը։ Հանրակացարաններում և միկրոշրջաններում պարբերաբար կազմակերպվում են հանդիպումներ քաղաքի անվանի մարդկանց հետ, երիտասարդական երեկոներ։ Եվ որքա՜ն հետաքրքրական, բազմազան են անցնում հավաքներն ու փառատոները՝ «Հայրենիք, բարեկամությամբ ես դու հզոր ու գեղեցիկ» նշանաբանով, միութենական հանրապետությունների գիտության և կուլտուրայի օրերը, աշխատանքային հարվածային հերթափոխի շաբաթները՝ նվիրված միութենական հանրապետություններին։

Դոնի աշխատավորները, ինչպես և ողջ սովետական ժողովուրդը, ջերմորեն ընդունեցին կուսակցության առաջադրած՝ երկրի պարենային ծրագիրը։ Քաղաքի և գյուղի աշխատավորները լի են վճռականությամբ հարվածային աշխատանքով նվաճելու սննդամթերքի արտադրության ավելացման՝ պարենային ծրագրով նախատեսված բնագծերը։

Որո՞նք են այդ ասպարեզում Դոնի բնագծերը։ Տասնմեկերորդ հնգամյակում հացահատիկի համախառն արտադրանքը պետք է հասցնենք 8,5—9 միլիոն տոննայի, եգիպտացորենինը և արևածաղկինը՝ մեկական միլիոն տոննայի։ Կավելանա մսի, կաթի, բանջարեղենի, բրդի արտադրությունը։ Գյուղատնտեսական ընթացիկ տարին մեզ համար անհաջող եղավ. ամբողջ ամառը տեղացին հորդառատ անձրևներ։ Այդ էր պատճառը, որ մենք հավաքեցինք և պետությանը վաճառեցինք պլանով նախատեսվածից պակաս հացահատիկ։ Բայց եգիպտացորենն ու արևածաղիկն այս տարի առատ են։ Այնպես որ, մենք արդեն մոտենում ենք եգիպտացորենի մեկ միլիոն, իսկ արևածաղկի՝ 600 հազար տոննա բերքին։ Շատ տնտեսություններ պատրաստել են արդեն կերի մեկ-երկու տարվա պաշար։

Գյուղի աշխատավորների այս հաջողության մեջ իրենց ավանդն ունեն և մեր մարզի Մյասնիկյանի շրջանի աշխատավորները, որոնք, ինչպես նշեցի, բարեկամական ամուր կապեր են հաստատել Հայկական ՍՍՀ Արտաշատի և Ախուրյանի շրջանի երկրագործների հետ։

Այդ բարեկամությունը ծնվել է ավելի քան 20 տարի առաջ։ 1958 թվա-

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԸ, ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ՈՒ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Ծ. Ն. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
Իրավաբանական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

*ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ և սովետական կառավարության ուշադրության կենտրոնում միշտ եղել և մնում է հոգատարությունը մարդու նկատմամբ:*

*Անհատի համակողմանի և ներդաշնակ զարգացման, նրա պահանջմունքների հարաճուն աճի և բավարարման լավագույն ապացույցն է ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի «Մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի ՍՍՀՄ պարենային ծրագրի և դրա իրականացման միջոցառումների մասին» ծավալուն որոշումը, որը մշակվել է ՍՄԿԿ XXVI համագումարի ցուցումների հիման վրա:*

*Կուսակցության համագումարը, առաջադրելով մեր երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման լայն ծրագիր, իր առաջնահերթ խնդիրը համարեց սովետական մարդու համակողմանի ու ներդաշնակ զարգացումը, նրա պահանջմունքների բավարարումը, նրա իրավունքների և ազատությունների անշեղ կատարումը:*

*Սովետական հասարակության տնտեսական, սոցիալական ու հոգևոր կյանքում կատարված առավել էական փոփոխությունները, սովետական համաժողովրդական պետության խոր դեմոկրատիզմն օրենսդրորեն արտահայտված են սովետական սահմանադրություններում:*

*Սոցիալիստական դեմոկրատիան մշտապես զարգացող և կատարելագործվող պրոցես է, որն ապահովում է աշխատավոր զանգվածների մասնակցությունը պետության կառավարմանը, պետական-իրավական նշանակություն ունեցող որոշումների ընդունմանը:*

*ՍՍՀՄ-ում 18 տարին լրացած յուրաքանչյուր չորրորդ մարդը մասնակցում է որոշումներ ընդունող մարմինների աշխատանքին: Սովետական մարդն իր երկրի իսկական տերն է, ո՛չ միայն օրենքների կատարողը, այլև դրանց ընդունման ակտիվ մասնակիցը: Սովետական ցանկացած գործարանի կամ ֆաբրիկայի իսկական տերերը բանվորներն են, աշխատանքի մարդը: Իսկ կապիտալի աշխարհում արժեքներ ստեղծող մարդը ո՛չ միայն չի կարող մասնակցել տվյալ արտադրության կառավարմանը, այլև զուրկ է քաղաքական տարրական իրավունքներից, երկյուղով է նայում վաղվա օրվան, վախենալով զրկվել իր հիմնական՝ աշխատանքային իրավունքից:*

*1982 թ. նոյեմբեր ամսվա տվյալներով գործազուրկների թիվը ԱՄՆ-ում հասել է 11 մլն 551 հազար մարդու, 6,6 մլն մարդ հարկադրաբար աշխատում է ոչ լրիվ աշխատանքային շաբաթ: Այսպիսին է պատկերը «դեմոկրատիայի» և «ազատության» երկիր Ամերիկայի Միացյալ Նահանգներում: Սոցիալիստական երկրներում դեմոկրատիան անհատի, նոր մարդու բազմակողմանի զարգացումն է, պատմական գիտակցական ստեղծագործական պրոցեսին, հասարակության և պետության գործերի կառավարմանը միլիոնավոր աշխատավորներին ներգրավելու միջոց: Սոցիալիստական դեմոկրատիան հանրային և անձնական շահերի ներդաշնակ զուգակցումն է, կոլեկտիվում իսկական ստեղծագործական մթնոլորտի ստեղծումը, բացառելով սոցիալիստական համակեցության նորմերին ու սկզբունքներին խորթ այնպիսի երևույթներ, ինչպիսիք են բյուրոկրատիան և ձևամոլությունը:*

*«Դեմոկրատիայի հարցերը,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— ինչպես հայտնի է, այժմ գտնվում են սոցիալիզմի աշխարհի և կապիտալիզմի աշխարհի միջև մղվող գաղափարական ու քաղաքական պայքարի կենտրոնում: Բուրժուական գաղափարախոսները, ռևիզիոնիստները կեղծավորաբար տրտնջում են, թե մեզ մոտ իբր բացակայում է դեմոկրատիան: Նրանք մեզ ամեն կարգի «խորհուրդներ» են տալիս սոցիալիզմի «բարելավման», նրա «դեմոկրատացման» վերաբերյալ: Բայց նրանց հոգատարության առարկան, իհարկե, սոցիալիզմը չէ: Նրանք կուզենային մեզ վերադարձնել դեպի բուրժուական կարգերը, ուստի և փորձում են պարտադրել իրենց բուրժուական դեմոկրատիան, դեմոկրատիա շահագործողների համար, որը խորթ է ժողովրդի շահերին:*

*Դատարկ, անօգուտ ձեռնարկում է: Սովետական մարդիկ ունեն իրենց դեմոկրատիան՝ սոցիալիստականը, իրենց սկզբունքները, դեմոկրատիայի զարգացման իրենց տրադիցիաները»* (Լենինյան կուրսով, հ. 3, *էջ 386):*

*Դեմոկրատիան դասակարգային հասկացություն է, չկա ազատություն ընդհանրապես, ինչպես որ չկա դեմոկրատիա ընդհանրապես, հարցը այդպես է դրել իր ժամանակին սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինը: Հարցը այդպես է դնում և կուսակցությունն այսօր: Սոցիալիստական դեմոկրատիայի իմաստը, նրա ողջ էությունը մասսաների ակտիվ մասնակցությունն է համաժողովրդական պետության կառավարման գործին: Ի հակադրություն սուտի և կեղծիքի վրա հիմնված բուրժուական դեմոկրատիայի, որը աշխատավորներին հեռու է պահում պետական կառավարման ապարատին մասնակցելուց, սովետական դեմոկրատիան ապահովում է աշխատավոր մասսաների առավել լայն, ակտիվ մասնակցությունը երկրի պետական կառավարմանը:*

*Կոմունիստական կուսակցությունը միշտ էլ հոգում է սովետական դեմոկրատիայի զարգացման ու կատարելագործման համար: Ամրապնդվել է իրավակարգը, զարգացել է օրենսդրությունը, բարձրացել են սովետների դերն ու ակտիվությունը:*

*Մեր երկրում շարունակ բարեփոխվում են ժողովրդական ներկայացուցչական օրգանների գործունեության ձևերն ու մեթոդները, սովետական ընտրական սիստեմի դեմոկրատական սկզբունքները: Ժողովրդի ընտրյալները՝ դեպուտատները, պարբերաբար հաշվետու են լինում ընտրողների առջև, իսկ ժողովրդի վստահությունը չարդարացրած դեպուտատը ցանկացած ժամանակ կարող է ետ կանչվել ընտրողների մեծամասնության որոշմամբ՝ օրենքով սահմանված կարգով: Սովետների ընտրությունների ժամանակ, սկսած տեղական սովետներից մինչև ՍՍՀՄ Գերագույն սովետը, նրանց կազմը յուրաքանչյուր անգամ նորացվում է առնվազն մեկ երրորդով:*

*Անցած տարիներին կատարված խոր և բազմակողմանի սոցիալ-քաղաքական փոփոխությունների հիման վրա, սոցիալիստական հասարակությունը բարձրացել է որակական նոր մակարդակի: Իրականություն է դարձել Վ. Ի. Լենինի կանխատեսությունն այն մասին, որ սոցիալիզմը ստեղծում է մարդկային համակեցության նոր բարձրագույն ձևեր: Մեզանում հաստատվել, ռեալ իրականություն է դարձել մարդկանց պատմական նոր հանրությունը՝ սովետական ժողովուրդը:*

*Նոր սահմանադրություններում սովետներն անվանվել են ժողովրդական դեպուտատների սովետներ, որը բխում է մեր երկրի հասարակական-քաղաքական կյանքում տեղի ունեցած փոփոխություններից: ՍՍՀՄ-ում ստեղծված է զարգացած սոցիալիստական հասարակարգ, որի գերագույն նպատակը կոմունիզմի կառուցումն է: Սովետական համաժողովրդական պետությունն արտահայտում է հասարակության բոլոր խավերի կամքը և շահերը:*

*Սահմանադրությունն ապահովում է սովետական քաղաքացիների իրա-*





3. «Լենինյան ուղիով», № 11

վահավասարությունը տնտեսական, քաղաքական, սոցիալական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում՝ անկախ նրանց ազգային և ռասայական պատկանելությունից: Քաղաքացիների իրավունքների որևէ ուղղակի կամ անուղղակի սահմանափակում, ուղղակի կամ անուղղակի առավելությունների սահմանում՝ ըստ ռասայական և ազգային հատկանիշների, ինչպես նաև ռասայական կամ ազգային բացառիկության, թշնամանքի կամ արհամարհանքի ամեն մի քարոզ պատժվում են օրենքով:

Սովետական քաղաքացիների համար սահմանադրությամբ ապահովվում է խոսքի, մամուլի ազատություն, ժողովներին, միտինգներին մասնակցելու իրավունք: Նման իրավունքներ բուրժուական սահմանադրություններին հայտնի չեն: Սովետական պետության հիմնական օրենքը ստեղծում է նոր հնարավորություններ՝ աշխատավորության լայն մասսաների նախաձեռնության, նրանց ստեղծագործական ունակությունների զարգացման համար:

Տնտեսության սոցիալիստական սիստեմի և համաժողովրդական պետության ամրապնդումը անհատի իսկական ազատության ապահովման անհրաժեշտ պայմանն է: Հասուն սոցիալիստական հասարակարգը նպաստեց անհատի համակողմանի զարգացմանը, նոր մարդու կերպավորմանը: Դա մի հասարակություն է, որի կյանքի օրենքը բոլորի հոգատարությունն է յուրաքանչյուրի բարօրության նկատմամբ և յուրաքանչյուրի հոգատարությունը՝ բոլորի բարօրության նկատմամբ:

Պետության և հասարակության հանդեպ սովետական քաղաքացու իրավական ստատուսի հիմնական բովանդակությունը նրա իրավունքները, ազատություններն ու պարտականություններն են, որոնք հռչակված ու երաշխավորված են ՍՍՀՄ սահմանադրությամբ և սովետական օրենքներով:

ՍՍՀՄ-ում սահմանված է միասնական միութենական քաղաքացիություն: Միութենական հանրապետության յուրաքանչյուր քաղաքացի հանդիսանում է ՍՍՀՄ քաղաքացի՝ սահմանադրական բոլոր իրավունքներով ու պարտականություններով:

Սովետական քաղաքացիությունը մարդ-անհատի սոցիալ-քաղաքական ամուր կապն է իր պետության հետ: Զարգացած սոցիալիզմի պայմաններում քաղաքացիությունը, որպես պետության հետ անհատի քաղաքական և իրավական կապի հիմնական արտահայտություն, դեմոկրատական խոր բովանդակություն է ստանում: Դրա հիմնարար սկզբունքներն են համաժողովրդական սոցիալիստական հումանիզմը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը: ՍՍՀՄ-ում բոլոր մարդիկ իրավահավասար են:

Իրավահավասարության սկզբունքը մեծ Հոկտեմբերի արդյունքն է. «Յուրաքանչյուր մարդու համար,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— կարևոր է այն բանի գիտակցումը, որ իր իրավունքներով ինքը հավասար է հասարակության մյուս անդամներին, միշտ կարող է ակնկալել արդարացի, հարգալից վերաբերմունք իր նկատմամբ...» (Լենինյան կուրսով, հ. 5, էջ 93):

ՍՍՀՄ տարբեր ռասաների և ազգությունների քաղաքացիներն ունեն հավասար իրավունքներ: Այդ իրավունքների իրականացումն ապահովվում է ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ազգությունների համակողմանի զարգացման ու մերձեցման քաղաքականությամբ, սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով քաղաքացիներին դաստիարակելով, մայրենի լեզվից և ՍՍՀՄ մյուս ժողովուրդների լեզուներից օգտվելու հնարավորությամբ:

Սոցիալիստական հասարակարգի ամենաբնորոշ առանձնահատկություններից մեկն այն է, որ նրա սահմանադրությունում, պետական ու իրավական այլ ակտերում օրենսդրորեն ձևակերպվում են պետության և անհատի փոխհարաբերություններն ու որոշակի պարտականությունները:

Նոր սահմանադրություններն օրենսդրորեն ամրապնդեցին այն մեծ սոցիալական, տնտեսական ու քաղաքական իրավունքները, որ նվաճել են սովետական մարդիկ: Քաղաքացիների իրավունքների և ազատությունների մասին նախորդ սահմանադրությունների հոդվածներն ավելի ամրակայվեցին ու



խորացվեցին: Տեղ են գտել իրավական նոր նորմեր, որոնք չկային նախորդ սահմանադրություններում, ավելի ընդլայնվեցին ու ամրապնդվեցին սոցիալիստական դեմոկրատիայի տնտեսական հիմքերը. երաշխավորված իրավունքների իրականացման համար մեր երկրում գոյություն ունեն մեծ հնարավորություններ: Զարգացած սոցիալիզմի անհատի համակողմանի զարգացման համար ստեղծվում են նոր իրավահավասար հարաբերություններ, եղբայրական համագործակցության պայմաններ:

Սոցիալիստական սիստեմի հռչակած դեմոկրատական սկզբունքներն ապահովում են երկրի կառավարմանը, պետական բոլոր գործերին հասարակության լայն խավերի ակտիվ մասնակցությունը: Նոր սահմանադրությունների գլխավոր առանձնահատկություններից մեկը սոցիալիստական դեմոկրատիայի ընդլայնումն ու խորացումն է: «Այժմ մենք արդեն ո՛չ միայն տեսությունից, այլև բազմամյա պրակտիկայից գիտենք, ինչպես որ իսկական դեմոկրատիան է անհնար առանց սոցիալիզմի, այնպես էլ սոցիալիզմն է անհնար առանց դեմոկրատիայի մշտական զարգացման,— նշել է Լ. Ի. Բրեժնևը:— Մեր սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը մենք նախ և առաջ հասկանում ենք որպես հասարակության բոլոր գործերի կառավարմանը աշխատավորության առավել լայն մասնակցության անշեղ ապահովում, որպես մեր պետականության դեմոկրատական հիմունքների հետագա զարգացում, որպես անհատի բազմակողմանի ծաղկման պայմանների ստեղծում» (Լենինյան կուրսով, հ. 5, էջ 727):

Սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը սերտորեն առնչվում է սովետական մարդկանց իրավունքների և ազատությունների ընդլայնման ու կատարելագործման հետ:

Հայկական ՍՍՀ սահմանադրության Պետությունը և անհատը բաժնի հոդվածները նպատակամղված են ազատությունների ընդլայնմանը, օրենսդրության կատարելագործմանը:

Ինչպես ՍՍՀՄ, այնպես էլ Հայկական ՍՍՀ սահմանադրությունը բովանդակում է քաղաքացիների իրավունքների մի ամբողջ սիստեմ, որոնք շոշափում են անհատի կյանքի բուն հիմքերը: Դրանք են՝ աշխատանքի, հանգստի, առողջության պահպանման, սոցիալական ապահովության, կրթության, կուլտուրայի նվաճումներից օգտվելու, գիտական, տեխնիկական ու գեղարվեստական ստեղծագործության ազատության իրավունքները:

Ընդլայնվել են նաև սովետական մարդկանց քաղաքական իրավունքները: Մեր սահմանադրությունում ավելի լայնորեն, ավելի պարզորոշ և ավելի լրիվ են ձևակերպված ՍՍՀՄ քաղաքացիների սոցիալ-տնտեսական, քաղաքական իրավունքները, ազատությունները, և, որ ամենակարևորն է, այդ իրավունքների իրականացման ուղիներն ու մեթոդները:

«Մեր կուսակցությունը,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— միշտ հոգ է տարել և այսուհետև էլ մշտապես հոգ կտանի, որ աշխատավորները ոչ թե սոսկ ունենան հասարակության կառավարմանը մասնակցելու սահմանադրությամբ ընձեռված հնարավորություններ, այլ գործնականում ռեալ կերպով մասնակցեն դրան» (ՍՍՀՄ սահմանադրության մասին, «Հայաստան» հրատ., 1978, էջ 73):

Սովետական Հայաստանի, ինչպես նաև միութենական մյուս հանրապետությունների սահմանադրություններն ամենից առաջ ընդլայնեցին սովետական քաղաքացիների սոցիալ-տնտեսական հիմնական իրավունքների բովանդակությունը: Եթե, օրինակ, նախկինում խոսվում էր աշխատանքի իրավունքի մասին, ապա այժմ դա լրացվում է «պրոֆեսիայի, զբաղմունքների ու աշխատանքի տեսակի ընտրության իրավունքով՝ քաղաքացու կոչմանը, ընդունակություններին, պրոֆեսիոնալ պատրաստությանը և կրթությանը համապատասխան, ինչպես նաև, որ պակաս կարևոր չէ, հաշվի առնելով հասարակական պահանջմունքները» (նույն տեղը, էջ 19):

Սովետական քաղաքացիների նյութական ապահովության իրավունքների բովանդակությունը ևս հարստացված է. նյութական ապահովություն է տրամադրվում ո՛չ միայն ծերության, հիվանդության, աշխատունակության լրիվ կամ մասնակի կորստի, այլև կերակրողին կորցնելու դեպքում: Որոշ փոփո-

խություններ են կատարված նաև սովետական քաղաքացիների կրթության
իրավունքում։ Հայկական ՍՍՀ սահմանադրությունը երաշխավորում է ո՛չ
միայն ընդհանուր 8-ամյա, այլ նաև ընդհանուր պարտադիր միջնակարգ կրթության իրականացումը, կրթության բոլոր տեսակների անվճարությունը, սովորողներին և ուսանողներին կրթաթոշակով ապահովելը, պրոֆեսիոնալ տեխնիկական, միջնակարգ մասնագիտական և բարձրագույն կրթության լայն զարգացումը։

Նոր սահմանադրությունը, պահպանելով կանանց նախկինում ունեցած
իրավունքները, միաժամանակ երաշխավորում է նրանց տղամարդկանց հետ
հավասար հնարավորություններ՝ կրթություն և պրոֆեսիոնալ պատրաստություն
ստանալու, աշխատանքի, դրա վարձատրության ու աշխատանքում առաջ քաշվելու, հասարակական-քաղաքական և կուլտուրական գործունեության ասպարեզում։ Սովետական Միությունում կուլտուրայի և լուսավորության բնագավառի աշխատողների 70 տոկոսից ավելին կանայք են։

Միանգամայն այլ է պատկերը կապիտալի աշխարհում։ Մարդու իրավունքների մասին շատ են խոսում ԱՄՆ-ում։ Մինչդեռ մարդու իրավունքներն
ամենից շատ ոտնահարվում են այդ երկրում։ Հարիսի ծառայության անցկացրած հասարակական կարծիքի հարցման տվյալներով, ամերիկացիների 63
տոկոսը համոզված է, որ տղամարդկանց հետ կանանց հավասար իրավունքները պետք է երաշխավորված լինեն սահմանադրությամբ։ Սակայն ԱՄՆ-ի
իշխանություններն անտեսում են մեծամասնության կարծիքը՝ ի շահ մասնավոր բիզնեսի։ Ձեռնարկատերերին բնավ պետք չէ կանանց իրավահավասարությունը, այդ դեպքում հակաօրինական կդառնա բնակչության կեսից
ավելին կազմող ամերիկուհիների հանդեպ կիրառվող խտրականությունն աշխատավարձի բնագավառում, որն այժմ կազմում է տղամարդկանց վաստակի
մոտ 59 տոկոսը։

Հայկական ՍՍՀ սահմանադրության՝ **Քաղաքացիների հիմնական իրավունքները, ազատությունները և պարտականությունները** գլխում զգալիորեն
կատարելագործվել են նախորդ սահմանադրության սովետական քաղաքացիների իրավունքների վերաբերյալ դրույթները։ Նոր սահմանադրության 40-րդ
հոդվածով Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն առողջության պահպանության
իրավունք։ Այդ իրավունքն ապահովվում է առողջապահության պետական հիմնարկությունների կողմից ցույց տրվող անվճար որակյալ բժշկական օգնությամբ, քաղաքացիների բուժման ու կազդուրման հիմնարկությունների ցանցի
ընդլայնմամբ, անվտանգության տեխնիկայի և արտադրական սանիտարիայի
զարգացմամբ ու կատարելագործմամբ, կանխարգելիչ լայն միջոցառումների
իրականացմամբ, շրջակա միջավայրի բարելավմամբ և այլն։ Բոլորովին նոր
է սահմանադրության 44-րդ հոդվածը, որը վերաբերում է կուլտուրայի նվաճումներից քաղաքացիների օգտվելու իրավունքին։ Նոր է նաև սահմանադրության 42-րդ հոդվածը, ուր խոսվում է Հայկական ՍՍՀ քաղաքացիների բնակարանի իրավունքի մասին։ Այդ իրավունքն ապահովվում է պետական և հանրային բնակարանային ֆոնդի զարգացմամբ ու պահպանմամբ, կոոպերատիվ
և անհատական բնակարանային շինարարությանը ցույց տրվող օժանդակությամբ, բարեկարգ բնակարանների կառուցման ծրագրի իրականացման համեմատ հատկացվող բնակելի տարածությունը հասարակական վերահսկողության ներքո արդարացիորեն բաշխելով, ինչպես նաև բնակարանի և կոմունալ
ծառայությունների ոչ բարձր վարձով։

Առաջին անգամ սահմանադրությունում օրենսդրական կարգով ձևակերպվում է, որ Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն պետական և հասարակական
գործերի կառավարմանը, համապետական և տեղական նշանակություն ունեցող օրենքների և որոշումների քննարկմանն ու ընդունմանը մասնակցելու
իրավունք։ Այդ իրավունքն ապահովվում է ժողովրդական դեպուտատների սովետներ և այլ ընտրովի պետական մարմիններ ընտրելու և դրանցում ընտրվելու, համաժողովրդական քննարկումներին և քվեարկություններին, ժողովրդական վերահսկողությանը, պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների և հասարակական ինքնագործունեության մարմինների



աշխատանքին, աշխատավորական կոլեկտիվների ժողովներին և ըստ բնակության վայրի գումարվող ժողովներին մասնակցելու հնարավորությամբ։ Այդ
հոդվածով սահմանված սովետական մարդկանց իրավունքների իրականացման
կոնկրետ օրինակը հանդիսացավ ավելի քան չորս ամիս տևած ՍՍՀՄ սահմանադրության, ինչպես նաև Հայկական ՍՍՀ սահմանադրության նախագծերի
քննարկումը։ Այդ բաժինը հարստացել է նաև մի շարք այլ հոդվածներով ու
դրույթներով։

Սոցիալիզմը, հիրավի, աշխատավոր մարդուն ընձեռում է լայն իրավունքներ, վստահություն վաղվա օրվա նկատմամբ, բացառում է գործազրկությունը, որը հատուկ է կապիտալիզմին, վերացնում է ճնշման ու հարկադրանքի բոլոր հնարավորությունները։

Սովետական քաղաքացիներն իրենց լայն իրավունքների ու ազատությունների հետ միասին ունեն նաև պարտականություններ։ Իրավունքերի և պարտականությունների փոխադարձ կապի հարցերը օրենսդրորեն ձևակերպված է
Հայկական ՍՍՀ նոր սահմանադրության 57-րդ հոդվածում, ուր ասված է. «Իրավունքների և ազատությունների իրականացումը անբաժանելի է քաղաքացու
կողմից իր պարտականությունների կատարումից»։ Այս նշանակում է, որ քաղաքացին չի կարող օգտվել միայն իրավունքներից ու ազատություններից,
առանց որևէ պատասխանատվություն կրելու հասարակության և այն պետության հանդեպ, որի քաղաքացին է ինքը։

Հայկական ՍՍՀ քաղաքացին պարտավոր է պահպանել ՍՍՀՄ և Հայկական
ՍՍՀ սահմանադրությունները, սովետական օրենքները, հարգել սոցիալիստական համակեցության կանոնները, արժանապատվությամբ կրել ՍՍՀՄ քաղաքացու բարձր ու պատվավոր կոչումը։

Սովետական քաղաքացին, որտեղ էլ որ լինի, պարտավոր է պահպանել ու
ամրապնդել մեր հասարակարգի հիմքը հանդիսացող հանրային սոցիալիստական սեփականությունը, պաշտպանել սովետական պետության շահերը,
նպաստել նրա հզորության և հեղինակության ամրապնդմանը։ Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը ՍՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է։ ՍՍՀՄ զինված ուժերի շարքերում զինվորական ծառայությունը սովետական քաղաքացիների պատվավոր պարտականությունն է։

Պետության սեփականությունը կազմող բնակարանային ֆոնդից օգտվող
քաղաքացիները պարտավոր են պահպանել այն։

Հայկական ՍՍՀ քաղաքացու պարտականությունները մեր պետության
կողմից սահմանված և օրենսդրական կարգով սահմանադրությունում ամրակայված պարտականություններ են, որոնք յուրաքանչյուր քաղաքացու առաջադրում են վարքագծի որոշակի տեսակ, որի կատարումը պարտադիր է։ Նոր
սահմանադրությունը վավերագրում է ՍՍՀՄ հասարակարգի և քաղաքականության հիմունքները, սահմանում քաղաքացիների իրավունքները, ազատություններն ու պարտականությունները, հռչակում համաժողովրդական պետության կազմակերպման սկզբունքներն ու նպատակները։ «Մենք ուզում ենք, որ
ՍՍՀՄ քաղաքացիները լավ իմանան իրենց իրավունքներն ու ազատությունները, դրանց իրականացման ուղիներն ու մեթոդները, որ նրանք կարողանան
այդ իրավունքներն ու ազատությունները կիրառել հօգուտ կոմունիզմի կառուցման, պարզորոշ հասկանան դրանց անխզելի կապը իրենց քաղաքացիական պարտականությունների բարեխիղճ կատարման հետ» (Լ. Ի. Բրեժնև,
**ՍՍՀՄ սահմանադրության մասին**, էջ 73)։

Նոր սահմանադրությունն զգալիորեն կատարելագործում է արդեն իսկ
նախորդ սահմանադրությամբ սովետական քաղաքացիների իրավունքների վերաբերյալ դրույթները.

ա) Հանրօգուտ գործունեության իր ընտրած բնագավառում բարեխղճորեն
աշխատելու պարտականությունը (հոդ. 58).

բ) Հայկական ՍՍՀ քաղաքացին պարտավոր է պայքարել պետական ու
հանրային ունեցվածքի հափշտակումների և շռայլումների դեմ, հոգատարությամբ վերաբերվել ժողովրդական բարիքին (հոդ. 59).

գ) հարգել այլ անձանց իրավունքներն ու օրինական շահերը, անհաշտ

լինել հակահասարակական արարքների նկատմամբ, ըստ ամենայնի աջակցել հասարակական կարգի պահպանմանը (հոդ. 63).

դ)հարգել մյուս քաղաքացիների ազգային արժանապատվությունը, ամրապնդել սովետական բազմազգ պետության ազգերի ու ազգությունների բարեկամությունը (հոդ. 62).

ե) Հայկական ՍՍՀ սահմանադրությունում երկրի հիմնական օրենքի ատիճանի է բարձրացված սովետական քաղաքացիների պարտականությունը՝ հոգ տանել երեխաների դաստիարակության մասին, նրանց պատրաստել հանրօգուտ աշխատանքի, աճեցնել որպես սոցիալիստական հասարակության արժանավոր անդամների: Զավակները պարտավոր են հոգալ ծնողների մասին և նրանց օգնել (հոդ. 64):

Ընկեր Լ. Ի. Բրեժնևը «ՍՍՀՄ սահմանադրության հիմնական օրենքի նախագծի և նրա համաժողովրդական քննարկման արդյունքների մասին» զեկուցման մեջ նշել է, որ «նման լրացման վերաբերյալ առաջարկություններ են ստացվել ո՛չ միայն զառամյալ տարիքի անձանցից, այլև, որ առանձնապես ուրախալի է, բազմաթիվ երիտասարդներից» (ՍՍՀՄ սահմանադրության մասին, էջ 43):

Քննարկման ընթացքում արված առաջարկությունները հարստացրին սովետական քաղաքացիների պարտականություններին վերաբերող հոդվածները: Դա մի անգամ ևս ապացուցում է, որ սովետական մարդիկ շահագրգռված են ընդլայնելու ո՛չ միայն իրենց իրավունքների ու ազատությունների, այլև պարտականությունների շրջանակը, որը բխում է ամբողջ հասարակության, ողջ ժողովրդի շահերից:

Սահմանադրությունում բոլորովին նոր են բնության և հուշարձանների պահպանությանը վերաբերող հոդվածները: Հայկական ՍՍՀ քաղաքացիները պարտավոր են հոգատարությամբ վերաբերվել բնությանը, պահպանել նրա հարստությունները (հոդ. 65): Այնուհետև սահմանադրությունը հռչակում է, որ պատմական հուշարձանների և կուլտուրական մյուս արժեքների պահպանության նկատմամբ հոգատարությունը Հայկական ՍՍՀ քաղաքացիների պարտքն ու պարտականությունն է (հոդ. 66):

Սովետական մարդիկ հասկանում են, որ մեր գաղափարական հակառակորդների համար ազատության սահմանափակումը ո՛չ թե դեմոկրատիայի սահմանափակում է, ո՛չ թե արգելակում է անհատի իրավունքների ազատ ու անկաշկանդ իրականացումը, այլ ծառայում է դեմոկրատիայի պահպանմանը հանցավոր ոտնձգություններից:

Բուրժուական պրոպագանդան Միացյալ Նահանգները համարում է «դեմոկրատիայի միջնաբերդ»: Ամերիկյան սահմանադրությունը հռչակում է խոսքի, ժողովների, մամուլի ազատություն, իսկ իրականում հետաքննությունների ֆեդերալ բյուրոն, կենտրոնական հետախուզական վարչությունը և պետական այլ մարմիններ կոպիտ կերպով խախտում են ԱՄՆ-ի քաղաքացիների սահմանադրական իրավունքները:

Ամերիկայի Միացյալ Նահանգներում՝ «դեմոկրատիայի այդ միջնաբերդում», որտեղ ավելի շատ են խոսում մարդու իրավունքների մասին, նեգրերը, որոնց թիվը կազմում է ավելի քան 28 միլիոն մարդ, այսինքն՝ ԱՄՆ-ի բնակչության 12 տոկոսը, հարյուր անդամներից բաղկացած սենատում ունեն միայն մեկ ներկայացուցիչ, իսկ ներկայացուցիչների պալատի անդամների միայն 0,4 տոկոսն են կազմում նեգրերը: Մարդու իրավունքների մասին շաղակրատող այս երկիրը մինչև այսօր չի ստորագրել 30 տարի առաջ Միավորված ազգերի կազմակերպության ընդունած «Մարդու իրավունքների դեկլարացիան»: ԱՄՆ-ը հրաժարվեց միանալու ապարտեիդի և ռասայական ու ազգային խտրականության ամեն մի ձևի վերացման վերաբերյալ միջազգային համաձայնագրին, չպաշտպանեց ՄԱԿ-ի հռչակած ռասիզմի դեմ պայքարի տասնամյա ծրագիրը (1973—1983 թթ.): Կապիտալի աշխարհում միլիոնավոր քաղաքացիներ զրկված են մարդու հիմնական՝ աշխատանքի իրավունքից:

Բուրժուական շատ սահմանադրություններում և այլ իրավական ակտերում բազմաթիվ գեղեցիկ խոսքեր կան մարդու իրավունքների, ազատությունների



մասին, բայց իրականում դրանք կարծեցյալ իրավունքներ են: Միայն զարգացած կապիտալիստական երկրներում ներկայումս կան 20 միլիոնից ավելի գործազուրկներ: Ֆրանսիական սահմանադրությամբ՝ «Յուրաքանչյուր քաղաքացի ունի աշխատանքի իրավունք»: Այդ քաղաքակիրթ երկրում այժմ կան երկու միլիոնից ավելի գործազուրկներ, այսպես կոչված «ազատ աշխարհը» նրանց համար չի ապահովում մարդու հիմնական իրավունքներից մեկը՝ աշխատանքի իրավունքը: Իտալիայի ֆինանսների մինիստրությունը կարգադրել է իր տեղական բաժանմունքներին աշխատանքի չընդունել հղի կանանց և երիտասարդ մայրերին: Դրանից ելնելով աշխատանքի են ընդունում միայն տղամարդկանց: Այս այն դեպքում, երբ Իտալիայի սահմանադրությունում սևով սպիտակի վրա գրված է, որ «հանրապետությունը հովանավորում է մայրությունը, մանկությունն ու երիտասարդությունը», ինչպես նաև՝ «աշխատավոր կինն ունի նույնպիսի իրավունքներ, ինչ-որ տղամարդը»: Մարդու իրավունքների և ազատությունների արևմտյան թմբկահարողների խոսքերն ու գործերը հակասում են միմյանց:

Մարդու իրավունքների և ազատությունների համար մղվող պայքարը դրոշը զարգացած սոցիալիզմի դրոշն է: Իրոք, սովետական մարդ-անհատի իրավունքների ընդլայնումն իրական դարձնելու ձգտումը կարմիր թելի պես անցնում է սովետական պետության պատմության միջով, խաղաղության լենինյան դեկրետից մինչև նոր՝ զարգացած սոցիալիզմի սահմանադրությունները:

Սովետական Միությունը, սոցիալիստական համագործակցության մյուս երկրները ձգտում են հասնել մարդու իրավունքների միջազգային ճանաչմանը և դրանց գործնական իրականացմանը: Սոցիալիստական երկրների նախաձեռնությամբ և ամենաակտիվ ու գործնական մասնակցությամբ, Միավորված ազգերի կազմակերպության գլխավոր ասամբլեան 1948 թ. դեկտեմբերի 10-ին ընդունեց մարդու իրավունքների ընդհանուր դեկլարացիան: Դեկլարացիայի առաջին հատվածում ասված է, որ բոլոր մարդիկ ծնվում են ազատ և իրենց արժանապատվությամբ ու իրավունքներով հավասար: Դեկլարացիայի հռչակած այդ սկզբունքները հնարավոր է կիրառել միայն սոցիալիզմի երկրներում, ուր չկան արտոնյալների դասակարգ, կապիտալիստներ, բանկիրներ, կալվածատերեր: Միայն սոցիալիզմի երկրներում է վերջ տրված ծագումնային, սոցիալական և ազգային անհավասարություններին, ճնշմանը, բռնությանն ու հարկադրանքի բոլոր ձևերին:

Կապիտալիստական երկրներում չի կարող իսկական հավասարություն լինել գործարանատիրոջ և նրանից կախման մեջ գտնվող բանվորների, կալվածատիրոջ և բատրակի միջև: Միայն սոցիալիզմի երկրներում են պայմաններ ստեղծված անհատի իսկական ազատության համար:

Զարգացած սոցիալիզմը մեծ ներգործություն է ունենում բովանդակ աշխարհի հարյուր միլիոնավոր մարդկանց մտքերի ու զգացմունքների վրա: Նրանց համար ակնհայտ է դարձել, որ միայն սոցիալիզմն է աշխատավոր մարդկանց համար ապահովում ազատություն, իսկական դեմոկրատական իրավունքներ, բարեկեցություն, գիտելիքներին տիրապետելու ամենալայն հնարավորություն, ապագայի նկատմամբ հաստատ վստահություն:

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆՈՒՄ

**Լ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
Երևանի պետական համալսարանի գիտական
աշխատանքների գծով պրոռեկտոր, փիլիսոփայական
գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, բարձր գնահատելով սովետական գիտության նվաճումները, միաժամանակ մշակեց մեր գիտնականների նոր մասշտաբային խնդիրները երկրի սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային ծրագրերի իրականացման գործում: Կուսակցության համաժողովի որոշումներին համապատասխան ՍՄԿԿ Կենտկոմի ընթացիկ տարվա մայիսյան պլենումը քննարկեց և հաստատեց ՍՍՀՄ պարենային ծրագիրը, որի կենսագործման կարևորագույն պայմաններից են աճի ինտենսիվ գործոններին անցնելն ու գիտատեխնիկական առաջընթացի արագացումը:*

*Արդի գիտության, գիտատեխնիկական առաջընթացի հզոր ազդակներից են բուհական, մասնավորապես համալսարանական գիտագործնական պոտենցիալը, որտեղ լուրջ ուսումնասիրություններ են կատարվում և ունեն հիմնարար տեսական ու պրակտիկ նշանակություն:*

*Գիտության և արտադրության սերտաճումը կոմունիստական շինարարության հիմնական ռեզերվներից է, որի ինտենսիվ զարգացումը շատ բանով պայմանավորում է կուսակցության առաջադրած ծրագրերի հաջող կատարումը:*

*Երևանի պետական համալսարանում ձեռք են բերվել որոշակի հաջողություններ՝ գիտության զարգացման և արտադրության հետ դրա կապն ամրապնդելու առումով: Այստեղ գիտական հետազոտություններ են կատարվում 83 ամբիոններում և 6 գիտահետազոտական խմբերում, կոնդենսացված միջավայրերի ֆիզիկայի գիտահետազոտական ինստիտուտում, 6 պրոբլեմային և 2 ճյուղային լաբորատորիաներում:*

*Ընթացիկ հնգամյակի առաջին տարում, ըստ գիտական աշխատանքների թեմատիկ պլանի, համալսարանում ուսումնասիրվել են շուրջ 400 թեմաներ, այդ թվում՝ տնտեսական պայմանագրերով՝ 86: Այդ աշխատանքները կատարվում են Հայաստանի տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանի, գիտատեխնիկական կոմպլեքս ծրագրերի, գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի առանձին որոշումների համաձայն, ՍՍՀՄ և ՀՍՍՀ ԳԱ գիտական հետազոտությունների ծրագրերի շրջանակում, ՍՍՀՄ և ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունների հաստատած ծրագրերի և կոորդինացիոն պլանների, ճյուղային մինիստրությունների և գերատեսչությունների գիտահետազոտական աշխատանքների պլանների և ծրագրերի համաձայն: Աշխատանքներ են կատարվել 76 դասագրքերի և ուսումնական ձեռնարկների ստեղծման նպատակով: 1976 թ. համեմատությամբ համալսարանում կատարվող գիտական աշխատանքների ընդհանուր ծավալն աճել է 3 անգամ:*

*Անցած հնգամյակի ընթացքում համալսարանի աշխատակիցները հրատարակել են մոտ 200 անուն ուսումնական ձեռնարկ և մենագրություն, շուրջ 3.000 հոդված: Այդ ընթացքում ստացվել են 55 հեղինակային վկայական, 93 դրական որոշում, 1 պատենտ:*



*Համալսարանը երկրի 70 առաջատար բուհերից է: Բարձրորակ պրոֆեսորադասախոսական կազմի և նյութատեխնիկական բազայի առկայությունը համալսարանում հնարավորություն են ընձեռում իրագործելու բեղմնավոր գիտական հետազոտություններ արդի գիտության ամենատարբեր ոլորտներում: Այստեղ նպատակաուղղված աշխատանք է տարվում գիտական հետազոտությունների կազմակերպման հետագա բարելավման, գիտնականների գործունեության արդյունավետության բարձրացման և գիտության ու արտադրության կապի հետագա ամրապնդման համար: Համալսարանական մշակումների ներդրումից միայն անցած տարվա ընթացքում ստացվել է 6 մլն 348 հազար ռուբլու փաստացի տնտեսական օգուտ:*

*Մեխանիկամաթեմատիկական ֆակուլտետում լուրջ հաջողություններ են ձեռք բերվել կոմպլեքս փոփոխականի տեսության, ֆունկցիոնալ անալիզի, մասնակի ածանցյալներով դիֆերենցիալ հավասարումների, հավանականությունների տեսության և մաթեմատիկական վիճակագրության բնագավառում:*

*Կարևոր գիտական հետազոտություններ են կատարվում հոծ միջավայրի մեխանիկայի ժամանակակից տարբեր ուղղություններով՝ մագնիսաառաձգականության կոնտակտային խնդիրների անհամասեռ և անիզոտրոպ մարմինների առաձգականության տեսություններում, հեղուկ, գազային և պլազմային միջավայրի մեխանիկայում, ինչպես նաև տեսական մեխանիկայի բնագավառում: Հատկապես արժեքավոր արդյունքներ են ստացվել անիզոտրոպ սալերի և թաղանթների տատանման կայունության և օպտիմալ նախագծման խնդիրներում:*

*Կիրառական մաթեմատիկայի ֆակուլտետում արդյունավետ ուսումնասիրություններ են տարվում դիսկրետ մաթեմատիկայի, օպտիմիզացման խնդիրների լուծման, ծրագրավորման մոդելների, մաթեմատիկական ֆիզիկայի խնդիրների լուծման թվային մեթոդների, կոմպլեքս և իրական փոփոխականի ֆունկցիաների տեսության բնագավառում: Ստեղծվել են մի շարք կառավարման ավտոմատացված համակարգեր:*

*Ֆիզիկայի ֆակուլտետում հիմնարար և կիրառական հետազոտություններ են տարվում տեսական ֆիզիկայի ամբիոնում: Կատարված աշխատանքները լայն ճանաչում են գտել ինչպես Սովետական Միությունում, այնպես էլ նրանից դուրս: Աստղաֆիզիկայի ամբիոնի կողմից (ամբիոնի վարիչ՝ ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյան) հայտնաբերվել են շուրջ 500 ուլտրամանուշակագույն ավելցուկով գալակտիկաներ: Օպտիկայի ամբիոնում առաջին անգամ պրակտիկայում սինթեզվել է գերմաքուր ապակի: Այստեղ զարգացվում է նոր ուղղություն՝ լազերային ճառագայթման փոխազդեցությունը հեղուկ բյուրեղային նյութերի հետ:*

*Պինդ մարմնի ֆիզիկայի ամբիոնում և պրոբլեմային ու ճյուղային լաբորատորիաներում ստեղծված է ռենտգենյան հեռուստացուցային սիստեմ, որի օգնությամբ կարելի է դիտել բյուրեղների կառուցվածքային թերությունների արտապատկերումները, պատրաստվել են հատուկ ճշգրիտ գոնիոմետրեր, մշակվել է ռենտգենյան ռեզոնատորների ընդհանուր տեսությունը և գործնականում իրականացվել վերջիններիս մի քանի տարբերակները:*

*Մոլեկուլյար ֆիզիկայի և կենսաֆիզիկայի ամբիոնում մշակվել է պոլիմերային նյութերի երկարակեցության կանխատեսման թերմոդինամիկական մեթոդը:*

*Բարձր էներգիաների և տարրական մասնիկների ֆիզիկայի ամբիոնում կատարված թեմաների արդյունքները հնարավորություն են ընձեռում ճշգրտելու բարձր էներգիայով մասնիկների ու ատոմային միջուկների փոխազդեցության մեխանիզմների տեսական մոդելները:*

*Ֆիզիկայի ֆակուլտետի ռադիացիոն ֆիզիկայի լաբորատորիայի նվաճումների շնորհիվ տասներորդ հնգամյակում ստեղծվեց կոնդենսացված միջավայրերի ֆիզիկայի գիտահետազոտական ինստիտուտը, որը մեր հանրապետության բուհական գիտահետազոտական ինստիտուտների առաջնեկն է:*

*Այստեղ առաջին անգամ ՍՍՀՄ-ում աճեցվել են օպտիկական կատարյալ լիթիումի յոդատի մեծ բյուրեղներ, որոնք օգտագործվում են քվանտային*

էլեկտրոնիկայում՝ որպես լազերային ճառագայթման հաճախականության փոփոխման միջոցներ։ Ստեղծված է բյուրեղների աճեցման համապատասխան սարք, մշակված է անթերի բյուրեղների ստացման արտադրական տեխնոլոգիա, որը ներդրված է քիմիական արտադրությունում։

Ռադիոֆիզիկայի ֆակուլտետում ուսումնասիրություններ են կատարվել միլիմետրական և ավելի կարճ, այսպես կոչված, սուբմիլիմետրական ալիքների ստացման և ընդունման, հզոր տրանզիստորների նախագծման և ստեղծման, միջուկային նյութի տեսության, գերխիտ երկնային մարմինների ներքին կառուցվածքի, ատոմային ռեակտորների միջուկաֆիզիկական պրոցեսների տեսության բնագավառներում։ Ուշագրավ է կիսահաղորդիչների և դիէլեկտրիկների ֆիզիկայի ամբիոնի և լաբորատորիայի կողմից առաջին անգամ ՍՍՀՄ-ում մշակված նոր ֆոտոէլեկտրոլիզային սարքը, որը ջրածնի ստացման արդյունավետությամբ չի զիջում համաշխարհային նման գործող սարքերին։ Այս հետազոտությունները մեծ նշանակություն ունեն արեգակնային էներգիայի օգտագործման համար։

Լուրջ հաջողությունների են հասել համալսարանի քիմիկոսները։ Ֆիզիկական և կոլոիդ քիմիայի ամբիոնը պրոբլեմային լաբորատորիայի հետ համատեղ առաջարկել է նոր, էժան և ոչ թունավոր ստաբիլիզատոր, որը լրիվ փոխարինում է մինչև այժմ օգտագործվող թանկ և խիստ թունավոր նյութին։ Անօրգանական քիմիայի ամբիոնում և ճյուղային լաբորատորիայում ավարտվել և ներդրվել է Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի կոնվերտորային փոշիների հիդրոմետալուրգիական կոմպլեքս մշակումը։ Արդյունավետ աշխատանքներ են տարվում նաև մյուս ամբիոններում։

Փորձնական և տեսական նշանակություն ունեն կենսաբանական ֆակուլտետի կենսաֆիզիկայի, կենսաքիմիայի, մարդու և կենդանիների ֆիզիոլոգիայի, բուսաբանության, գենետիկայի և բջջաբանության, ագրոքիմիայի և հողագիտության ամբիոններում կատարվող հետազոտությունները։ Աշխարհագրական ֆակուլտետում շարունակվել են հետազոտությունները ՀՍՍՀ տարածքի սելավաբեր ավազանների ֆիզիկաաշխարհագրական պայմանների, առանձին սելավաբեր հոսքերի ուսումնասիրման ուղղությամբ։ Մշակվել են սելավների կանխման և վնասազերծման կոնկրետ առաջարկություններ։ Կազմվել են ՀՍՍՀ տարածքի և նրա առանձին մասերի խոշոր մասշտաբի բազմաթիվ քարտեզներ։ Երկրաբանական ֆակուլտետում ուսումնասիրություններ են կատարվել հանրապետության բազմամետաղային հանքավայրերի, մագմատիզմի, կույր հանքավայրերի որոնման, թաղված գետահովիտների հայտնաբերման, բնական լանջերի հանքավայրերի կայունության գնահատման առումով։ Ֆակուլտետում կազմվել է ՀՍՍՀ սեյսմիկ շրջանացման նոր քարտեզ, որը կարևոր նշանակություն ունի ինչպես երկրաշարժերի կանխագուշակման, այնպես էլ սեյսմակայուն կառույցների նախագծման ու կառուցման համար։

Ո՛չ միայն բարձրորակ մասնագետներ, այլև մարքս-լենինյան գաղափարախոսությամբ տոգորված ակտիվ կենսադիրքորոշում ունեցող քաղաքացիներ դաստիարակելու գործում մեծ դեր են կատարում համալսարանի հասարակագիտական ֆակուլտետների ամբիոնները, ողջ պրոֆեսորադասախոսական կազմը։ Զգալի է նաև այս ֆակուլտետների գիտական արտադրանքը։

Մեր բանասերները հրատարակել են մի շարք արժեքավոր դասագրքեր ու ուսումնական ձեռնարկներ. «Սովետահայ գրականության պատմություն», «Գրականության տեսություն», «Հայոց լեզվի դասավանդման մեթոդիկա», «Գրաբարի դասագիրք»։

Տեսական լուրջ հետազոտություններ են կատարվում նաև ընդհանուր և համեմատական լեզվաբանության ամբիոնում. «Արդի հայերենի բացատրական բառարանը», «Նախամաշտոցյան հայ գրի ու գրականության, մեսրոպյան այբուբենի և հարակից հարցերի մասին», «Ընդհանուր և հայկական բառագիտություն» և այլն։ Այս ամբիոնում ստեղծվել են նաև «Հայերենի խոսքի մասերի ուսմունքը», «Ածանցումը և ածանցները ժամանակակից հայերենում», «Չարենցը և ռուս գրականությունը» և այլ աշխատություններ։

Կարևոր գործ է կատարվում ՍՍՀՄ ժողովուրդների գրական ու մշակու-



թային կապերի ուսումնասիրության ասպարեզում։ ՍՍՀՄ ԳԱ Մ. Գորկու անվան համաշխարհային գրականության ինստիտուտի հետ համատեղ հրատարակվել են մի շարք գիտական արժեքավոր ժողովածուներ, որոնք բարձր գնահատականի են արժանացել գիտական հասարակայնության կողմից։ Հայագիտական զգալի արժեք են ներկայացնում լաբորատորիայի կողմից կատարվող հնագիտական ծավալուն պեղումները։

Բացառիկ արժեք է ներկայացնում Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների հանրագիտական բառարանը, որի առաջին հատորը մոտ 150 մամուլ ծավալով արդեն հանձնված է հրատարակչությանը։ Վերջին տարիներին ակտիվացել են գիտահետազոտական և գիտամեթոդական աշխատանքները ռուսաց լեզվի և գրականության ֆակուլտետում։

Դժվար է գերագնահատել այն աշխատանքը, որը կատարվում է ռուս գրականության ամբիոնում։ Վերջին տարիներին ռուսերեն լեզվով այստեղ պատրաստվել և հրատարակվել է միջնադարի հայ մեծ բանաստեղծների (Նարեկացի, Քուչակ, Երզնկացի) բանաստեղծությունների ժողովածուները, ինչպես նաև հայ պոեզիայի մի շարք անթոլոգիաներ և հատընտիրներ։

Այդ արգասավոր աշխատանքի շնորհիվ ռուս և եվրոպական ընթերցողը հնարավորություն է ստացել ծանոթանալու հայ միջնադարյան պոեզիայի ոչ միայն լավագույն թարգմանությունների, այլև մի շարք դեպքերում՝ տողացի թարգմանությունների հետ։

Իրավագիտական աշխատություններից հիշարժան են «Հայկական ՍՍՀ սահմանադրական օրենսդրության զարգացումը», «Հայկական ՍՍՀ պետական կառավարման մարմինները» մենագրությունները և այլն։

Մեր պատմաբանները պատրաստել և հրատարակել են մի շարք արժեքավոր մենագրություններ, ժողովածուներ, ուսումնական ձեռնարկներ, այդ թվում՝ «Հայ հասարակական քաղաքական շարժումները և Ռուսաստանը XIX դարի 50—60-ական թվականներին» մենագրությունը, «Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին» հոբելյանական ժողովածուն, «Հառիճի դամբարանաշարը»։

Արևելագիտական ֆակուլտետում աշխատանքներ են կատարվում մերձավորարևելյան լեզուների պատմական վերլուծության, նրանց պրոբլեմների ուսումնասիրման բնագավառում։

Համահամալսարանական ամբիոնների հետազոտությունները նվիրված են ՍՄԿԿ պատմության, փիլիսոփայության, տնտեսագիտության հրատապ պրոբլեմներին, ինչպես, օրինակ, «Հոկտեմբերը, սոցիալիզմը և ազգային հարցը», փիլիսոփայական արգումենտացիա, զարգացած սոցիալիզմի պայմաններում սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման տնտեսական հիմքերը, անձի գործունեության և գիտակցության մեջ անհատականի և հասարակականի հարաբերակցության, սովետական երիտասարդության գաղափարադաստիարակչական պրոբլեմները, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման օրինաչափությունները։

1981 թվականից համալսարանում գործում է սոցիոլոգիական հետազոտությունների միջֆակուլտետային լաբորատորիա։ Այդ ընթացքում նրա կողմից կատարվել են համալսարանի ուսանողների արժույթային կողմնորոշումների ու սոցիալական ակտիվության աշխատանքային և ազատ ժամանակի օգտագործման, դիմորդների պրոֆեսիոնալ կողմնորոշման, շրջանավարտների գործունեության պլանների և այլ կարևոր հարցեր։ ՀԿԿ Կենտրոնական կոմիտեի հանձնարարությամբ լաբորատորիան հետազոտել է Երևան քաղաքի դպրոցներում աշակերտների պրոֆեսիոնալ կողմնորոշումը և աշխատանքային դաստիարակությունը։

Լաբորատորիայի մշակումներն օգտագործում են համալսարանի զանազան ստորաբաժանումներ՝ գիտական և ուսումնադաստիարակչական աշխատանքի կատարելագործման նպատակով։ Լաբորատորիան նաև ուսումնական բազա է ծառայում լայն պրոֆիլի փիլիսոփա-մասնագետների պատրաստման համար։

Վերջին տարիներին ընդլայնվել են համալսարանի գիտական կապերը

հանրապետության և Միության ակադեմիաների, գիտահետազոտական ինստիտուտների, արտադրական ձեռնարկությունների հետ։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի մայիսյան (1982 թ.) պլենումի հաստատած ՍՍՀՄ պարենային ծրագիրը ներառում է միջոցառումների լայն համակարգ՝ առաջադրված խնդիրների լուծման գործում գիտության դերի բարձրացման նպատակով։ Նախատեսվում է նաև հետազոտությունների ծավալում և դրանց արդյունքների ներդրման մեխանիզմի կատարելագործում։ ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը խոր և համակողմանի վերլուծեց հանրապետության կուսակցական կազմակերպության անելիքները պարենային ծրագրի առաջադրած խնդիրների կատարման առումով։ Ինչպես իր զեկուցման մեջ նշել է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, «գիտահետազոտական ստորաբաժանումները պետք է 1982—1990 թվականներին միջոցներ ձեռնարկեն գիտական հետազոտությունների հետագա զարգացման և արտադրության մեջ գիտության նվաճումների արմատավորումն արագացնելու ուղղությամբ»։ Ուշադրություն է հրավիրվում այն բանին, որ գիտնականներն իրենց ուժերը պետք է կենտրոնացնեն արտադրության մասնագիտացման և միջտնտեսային կոոպերացիայի հետագա կատարելագործման, գյուղատնտեսության և դրա հետ կապված ճյուղերի կառավարման բնագավառներում գիտականորեն հիմնավորված առաջարկություններ մշակելու նպատակով։

Այդ մեծ ու հայրենանվեր խնդիրների կենսագործման համար գործունեության լայն ասպարեզ ունի նաև մեր համալսարանի կոլեկտիվը։ Մասնավորապես համալսարանում կատարվող հետազոտություններում առանձնահատուկ կարևորություն ունեն այն աշխատանքները, որոնք առնչված են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման մեթոդների մշակման, բույսերի պաշտպանական միջոցների և պարարտանյութերի ստեղծման, ստորգետնյա ջրերի հայտնաբերման և դրանք ոռոգման նպատակով օգտագործելու, արդյունաբերության տարբեր ճյուղերում օգտագործվող սննդարար նյութերը ոչ սննդարար քիմիական այլ նյութերով փոխարինելու, սննդամթերքի տնտեսման և գյուղատնտեսության մեջ կիրառվող մեքենաների ընտեղծման հետ։

Կենսաբանական ֆակուլտետի կենսաֆիզիկայի ամբիոնում կատարված ուսումնասիրությունները վկայում են, որ սերմերի նախացանքային մշակման ժամանակ խթանիչները, ազդելով նրանց փոխանակային պրոցեսների վրա, բարձրացնում են ծլունակությունը, ծլման էներգիան, աճը, կանաչ զանգվածը և բերքատվությունը։ Գիտաարտադրական բազմաթիվ փորձերի ժամանակ ստացվել է գյուղատնտեսական կուլտուրաների՝ ցորենի, գարու, եգիպտացորենի, պոմիդորի, տաքդեղի, բադրիջանի, վարունգի և ծխախոտի բարձր բերք։ Գյուղմինիստրության հետ հանրապետության տարբեր բնակլիմայական գոտիներում խթանիչների փորձարկման համատեղ աշխատանքները ցույց են տվել, որ դրանք 20—60 տոկոսով բարձրացնում են հացահատիկային, բանջարանոցային և տեխնիկական կուլտուրաների բերքը։

Այժմ այդ մեթոդի գիտաարտադրական փորձարկումը կատարվում է հանրապետության 11 շրջաններում և 14 տնտեսություններում, որոնք ունեն տարբեր բնակլիմայական պայմաններ։

Գենետիկայի և բջջաբանության ամբիոնում բացահայտվել է և հաստատվել բուսական հորմոնով՝ բերիլաթթվով բույսերի սերմերի նախացանքային մշակման նոր մեթոդի արդյունավետությունը։ Մշակվել են այդ մեթոդի կիրառական բոլոր կանոնները, որոնք ապահովում են դրական արդյունքներ ո՛չ միայն բույսերի նախացանքային մշակման առաջին տարում, այլև մշակված բույսերի սերմային սերունդներում։

Առաջարկված մեթոդը ստուգվել է մեր հանրապետության գյուղատնտեսության պրակտիկայում մի շարք կուլտուրաների վրա։ Այդ մեթոդը կարելի է կիրառել ամբողջ տարվա ընթացքում ինչպես փակ, այնպես էլ բաց գրունտի պայմաններում։ Դրա ներդրումը մեծ հեռանկարներ կբացի ո՛չ միայն գյուղատնտեսական կուլտուրաների աճի և զարգացման պրոցեսների խթանման, բերքի քանակի և որակի բարձրացման, հիվանդությունների և պարա-



զիտների հանդեպ բույսերի դիմացկունության ուժեղացման գործում, այլև կօգնի ազատվել պրակտիկայում կիրառում գտած, հաճախ մարդու առողջության համար վնասակար շատ քիմիական նյութերից, քանի որ առաջարկված մեթոդով օգտագործվող նյութը՝ հիբերելաթթուն, բնական նյութ է և անվնաս է ինչպես մշակվող բույսերի, այնպես էլ կենդանիների և մարդու համար։

Ագրոքիմիայի և հողագիտության ամբիոնում աշխատանքներ են կատարվում Արաքսի ավազանի ջրերի իոնգացիոն և ագրոքիմիական հատկությունների ուսումնասիրման նպատակով։ Հետազոտություններ են կատարվում նաև «Արմատների ձևավորումը բացօթյա հիդրոպոնիկայի պայմաններում» թեմայով։ Կատարված հետազոտությունները վկայում են, որ բացօթյա հիդրոպոնիկայի պայմաններում աճեցված բոլոր հետազոտված կուլտուրաների արմատային համակարգերը իրենց մորֆոլոգիական ցուցանիշներով և քիմիական կազմով մի քանի անգամ գերազանցում են հողում աճեցված ստուգիչ բույսերին։

Բուսաբանության ամբիոնում ուսումնասիրվում են բուսական և կենդանական ծագում ունեցող սննդամթերքների բորբոս առաջացնող սնկերով աղտոտվելու երևույթը։ Սննդամթերքները հետազոտվում են ինչպես թարմ, այնպես էլ վերամշակված վիճակում, հիմնականում պահպանման, ինչպես նաև պահեստավորման ժամանակ։

Մշակված և առաջարկված են միջոցառումներ Երևանի յուղսառոցարանում արտադրվող հալած պանիրների որակի բարձրացման համար։ Առաջարկվածի հիման վրա սկսված է հալած պանիրների արտադրամասի վերակառուցումը։ Նախատեսվում է շարունակել հետազոտությունները պահածոների, կարագի և պանրի աղտոտման պատճառների բացահայտման և դրանց վերացման միջոցառումների մշակման նպատակով։

Նման աշխատանքները հնարավորություն են ընձեռում նշանակալի փոփոխություններ կատարելու սանիտարահիգիենիկ վերահսկողության և սննդամթերքների բարորակության վերաբերյալ սննդարդյունաբերության մեջ ներկայումս գործող նորմատիվներում և ձեռնարկներում։

Պարենային ծրագրի համաձայն նախատեսված է զգալիորեն մեծացնել հողը պարարտացնող բակտերիալ պրեպարատների արտադրական ծավալները և բարձրացնել դրանց արդյունավետությունը։ Այս բնագավառում բույսերի ֆիզիոլոգիայի և անատոմիայի ամբիոնի և նրան կից գիտահետազոտական խմբի աշխատանքները հնարավորություն կընձեռեն ստեղծելու բակտերիալ պրեպարատներ, որոնք անհրաժեշտ են հողում բույսերի սննդառության համար։

Համալսարանի գեոմորֆոլոգիայի ընդհանուր և կիրառական երկրաբանական ամբիոնները, ջրային պրոբլեմների և հիդրոտեխնիկայի ինստիտուտի հետ համատեղ, զբաղվում են հայկական հրաբխային բարձրավանդակի լավածածկի տակ թաղված հնագույն գետահովիտների հայտնաբերման և դրանցում կենտրոնացված հզոր ջրահոսքերը երկրի մակերես դուրս բերելու գիտահետազոտական պրոբլեմով։ Մշակված կոմպլեքսային մեթոդները հնարավորություն են ընձեռում առանց նախնական հորատումների (որոնք պահանջում են մեծ ծավալի աշխատանքներ, ժամանակ և ծախսեր) անմիջապես անցնելու խոշոր տրամաչափի շահագործական հորատանցքերի փորման։ Ոռոգման տակ են դրված Աշտարակի և էջմիածնի շրջանների անջրդի տարածությունները՝ խաղողի և տեխնիկական կուլտուրաների նոր յուրացված պլանտացիաները։ Հուսալի արդյունքներ են ստացվել Արագած լեռնազանգվածում թաղված գետավազանում, որից արտահանված ջրերով կոռոգվեն Թալինի, Անիի, Արթիկի շրջանների հողատարածությունները։

Գիտականորեն մշակված և առայժմ փորձնական կիրառման վիճակում է հրաբխային բարձրավանդակի գարնանային վարարման ջրահոսքը բռնելու և այն լավային հատվածքի խոռոչներում ամբարելու կարևորագույն պրոբլեմը։ Դրանով հնարավորություն կստեղծվի, նախ՝ մաքսիմալ կերպով կրճատելու հողերի էրոզիան, սելավների հասցրած ավերածությունների վնասը և, երկրորդ՝ ստանալու ստորերկրյա բարձրորակ ջրերի լրացուցիչ պաշարներ։

Ֆիզիկական աշխարհագրության ամբիոնի (ամբիոնի վարիչ՝ պրոֆ. Հ. Կ. Գաբրիելյան) «Հայկական ՍՍՀ էրոզիոն և սելավային երևույթները» թեմայի կատարումը նույնպես սերտորեն առնչվում է ՍՍՀՄ պարենային ծրագրի հետ։ Էրոզիոն երևույթները յուրաքանչյուր տարի հանրապետության մակերևույթից հեռացնում են շուրջ 4 միլիոն տոննա մանրահող, հողն աղքատանում է արգասաբեր շերտից, բերքատվությունն ընկնում է։ Հանրապետության մի շարք շրջաններում սելավները բավական ծանր վնասներ են պատճառում։ Ինչպես էրոզիոն, այնպես էլ սելավային երևույթների ուսումնասիրման նպատակն է բացահայտել դրանց օրինաչափությունները, մշակել կանխարգելիչ միջոցներ։ Արդեն ուսումնասիրվել են Սևանի, մերձերևանյան շրջանի, Ղափան քաղաքի, Արարատյան դաշտի և Արփա գետի ավազանի էրոզիոն և սելավային երևույթները և առաջարկներ են մշակվել հակաէրոզիոն և հակասելավային միջոցառումների համար։ Այժմ շարունակվում են հետազոտությունները հանրապետության այլ շրջաններում։

Օրգանական քիմիայի ամբիոնում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու նպատակով լուրջ աշխատանքներ են կատարվում չհագեցած լակտոնների և կումարինների նոր ածանցյալների սինթեզի ասպարեզում։ Ինչպես հայտնի է, պարենային հարցի լուծման ձևերից մեկը սննդի խնայողաբար օգտագործումն ու տնտեսումն է։ Այս ասպարեզում ամբիոնը մշակում է մեծ կիրառություն ունեցող քիմիական նյութի ստացման նոր արտադրական եղանակ ոչ սննդարար նյութերի բազայի վրա, որի ներդրման արդյունքում կստացվի մի քանի միլիոն ռուբլու տնտեսական օգուտ։

Ֆիզիկական քիմիայի ամբիոնում և պոլիմերային պրոցեսների կինետիկայի պրոբլեմային լաբորատորիայում մշակված է նոր սոսինձ, որի բաղադրության մեջ նվազագույնի է հասցվել սննդարար նյութերի քանակությունը։ ՀՍՍՀ ԳԱ ագրոքիմիայի ինստիտուտի հետ համատեղ ամբիոնը և լաբորատորիան աշխատանքներ են կատարում հանրապետության տարբեր շրջանների հողերի ֆերմենտատիվ ակտիվությունը քանակապես ուսումնասիրելու նպատակով։

Հոծ միջավայրի մեխանիկայի ամբիոնը ավտոմոբիլային միավորման տեխնիկական առաջադրանքով գիտահետազոտական աշխատանքներ է կատարում ԵՐԱԶ—37305 նոր ընտանիքի ավտոմեքենա-ֆուրգոնների թափքի մեխանիկական ամրության ուսումնասիրման և կոնստրուկցիաների հուսալիության, ամրության և հարատևության չափանիշների մշակման ոլորտում։ Ներկայումս մշակվում են ավտոմեքենայի այնպիսի մոդիֆիկացիաներ, ինչպիսիք են՝ շուտ փչացող մթերքների տեղափոխման համար նախատեսված հերմետիկ թափքով ավտոմեքենան և դաշտային պայմաններում գյուղատնտեսական տեխնիկայի օպերատիվ վերանորոգման համար նախատեսված փոքր չափերի շարժական մեխանիկական արհեստանոցը, էլեկտրաուժային կայանը և այլն։

Կուսակցության առաջադրած պարենային ծրագրի կոմպլեքս խնդիրների կապակցությամբ վերանայվում են նաև հումանիտար ֆակուլտետների հասարակագիտական ամբիոնների գիտահետազոտական աշխատանքների պլանները։ Այսպես, Իրավաբանական ֆակուլտետում ուսումնասիրվում է հանրապետության ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարման կազմակերպման ու կատարելագործման հարցերը։ ՍՄԿԿ պատմության ամբիոնում ուսումնասիրվում է հանրապետության գյուղական շրջանների սոցիալական զարգացման գործում Հայաստանի կոմունիստական կուսակցության գործունեությունը։ Քաղաքատնտեսության ամբիոնում ուսումնասիրվում են գյուղական բնակչության կենսամակարդակի բարձրացման սոցիալ-տնտեսական պրոբլեմները։ Գիտական կոմունիզմի ամբիոնում ուսումնասիրվում են գյուղատնտեսական արտադրական կոլեկտիվի կառավարման, գյուղի ու քաղաքի միջև էական տարբերությունների հաղթահարման պրոբլեմները։

Մեր հաջողությունները, որոնց զգալի մասը ձեռք է բերվել վերջին տարիներին, համալսարանի ռեկտորատի, կուսկոմիտեի և հասարակական կազմակերպությունների ավելի նպատակասլաց աշխատանքի արդյունք են։ Ռեկտորատի, գիտական խորհրդի և կուսկոմիտեի համատեղ նիստերում մշտապես քննարկվում են համալսարանի գիտահետազոտական աշխատանքների վիճակը և դրանց արդյունավետության բարձրացման ուղիները՝ ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումների լույսի ներքո, կարևորագույն գիտահետազոտական աշխատանքների կատարման ընթացքը, ֆակուլտետների խորհրդի և ամբիոնների գործունեությունն այդ աշխատանքների այժմեականության ապահովման և ժամանակին կատարելու գործում։



Այդպիսի պրակտիկան, անկասկած, խթանում է ստեղծագործական, աշխատանքային առավել նպաստավոր մթնոլորտի ստեղծմանը, մոբիլիզացնում համալսարանի գիտնականների ստեղծագործական հնարավորությունները երկրի տնտեսական և սոցիալական զարգացման հրատապ խնդիրների լուծման գործում։

Այնուհանդերձ հարկ է շեշտել, որ ամբիոնների գիտական հետազոտությունների պլանավորման պրակտիկայում երբեմն չի ապահովվում ընտրված հետազոտության թեմայի հրատապությունը։ Մինչև վերջին ժամանակներս եղել են թեմաներ, որոնք տարիներ շարունակ անցել են մեկ պլանից մյուսը, չի ապահովվել դրանց ժամանակին և որակյալ կատարումը։ Մի շարք ֆակուլտետների, ամբիոնների և լաբորատորիաների ղեկավարներ անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում արտադրության մեջ գիտական ուսումնասիրությունների ներդրմանը։

Գիտական ներդրումների կազմակերպման պրակտիկայում ընդհանրապես կան նաև վերադաս օրգանների կողմից չլուծված հարցեր։ Խոսքն այն մասին է, որ առանձին մինիստրություններ, ձեռնարկություններ և գիտնականներ անհրաժեշտ պատասխանատվություն չեն ցուցաբերել արտադրության մեջ գիտական նվաճումների ներդրմանը։ Պրակտիկան ցույց է տալիս, որ տնտեսական պայմանագրային աշխատանքներն ամբիոններում և լաբորատորիաներում, որպես կանոն, կատարվում են ժամանակին և պատվիրատուի կողմից ընդունվում բարձր գնահատականով։ Սակայն հետո ամիսներ, երբեմն էլ տարիներ շարունակ ոչինչ չի արվում։ Դրա պատճառներից մեկն այն է, որ ներդրման և ռեալ արդյունավետության վերաբերյալ հաշվետվություն պահանջվում է բուհից և ոչ թե պատվիրատուներից։ Այնինչ, պատշաճ պատասխանատվություն պետք է կոնկրետ կերպով սահմանվի համագործակցող յուրաքանչյուր կողմի համար։ Եվ դա կհամապատասխանի ՍՄԿԿ XXVI համագումարի այն ցուցումին, որով պահանջվում է «բարձրացնել մինիստրությունների և գերատեսչությունների պատասխանատվությունը գիտական հիմնարկություններում հետազոտությունների մակարդակի, ինչպես նաև արտադրության մեջ ավարտուն գիտական մշակումների և հայտնագործությունների արդյունքների արագ օգտագործման գործում»։

Եթե խոսելու լինենք համալսարանում գիտահետազոտական աշխատանքների ավելի արդյունավետ կազմակերպման դժվարությունների մասին, ապա առաջին հերթին պետք է ուշադրություն դարձնել անհրաժեշտ մակերեսի բացակայության վրա։ Մեր լաբորատորիաները խցկված են փոքրիկ սենյակներում, երբեմն էլ զբաղեցնում են լսարանները, որից էլ տուժում է ուսումնական պրոցեսը։

Հրատապ հարցերից է մեր համալսարանում գիտահետազոտական աշխատանքների սպասարկման կենտրոնի ստեղծումը։ Ինչպես ցույց է տալիս երկրի մի շարք բուհերի օրինակը, այն նպաստում է թանկարժեք և հազվագյուտ գիտական սարքավորումների ավելի արդյունավետ օգտագործմանը։ Այդպիսի կենտրոնի կազմակերպման համար համալսարանը կարիք է զգում ֆինանսավորման և աշխատանքային մակերեսների։

Մեր ուշադրության կենտրոնում պետք է լինի բուհական գիտության և ակադեմիական գիտության կապի հետագա ուժեղացումը։ Քանի որ այս հարցում որպես կոորդինացիոն կենտրոն հանդես է գալիս ակադեմիան, ապա, մեր կարծիքով, նրա գործունեությունը այս բնագավառում կարիք է զգում բարելավման։ Դա կնպաստի ինչպես ԳԱ ինստիտուտների, այնպես էլ հանրապետության բուհերի գիտահետազոտական աշխատանքների արդյունավետության զգալի բարձրացմանը, արդյունաբերության հետ դրանց կապի հետագա ամրապնդմանը։

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԿՈՒԼՏՈՒՐ-ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

**Հ. Մ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

*ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ սովետական ժողովուրդը, նրա փառապանծ բազմամիլիոնանոց բանվոր դասակարգը կյանքի է կոչում ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումները, աշխատանքային, քաղաքական, ստեղծագործական ակտիվության պայմաններում արժանի գործերով ու նախաձեռնություններով դիմավորում ՍՍՀՄ կազմավորման 60-ամյա հոբելյանը։ Սովետական Միության անկասելի, դինամիկ զարգացման գործում իր ծանրակշիռ և առաջնակարգ տեղն ունի բանվոր դասակարգը։*

*Իր քաղաքականության մեջ կուսակցությունն անշեղորեն առաջնորդվում է բանվոր դասակարգի հեղափոխական, առաջատար դերի մասին մարքս-լենինյան տեսությամբ։ Սոցիալիզմի կառուցման մեր երկրի և համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրների փորձը լիովին հաստատում է բանվոր դասակարգի մասին լենինյան այն հանճարեղ միտքը, որ «միայն այդ դասակարգը կարող է օգնել աշխատավոր մասսաներին՝ միավորվելու, համախմբվելու և վերջնականապես պաշտպանելու, վերջնականապես ամրապնդելու, վերջնականապես կառուցելու կոմունիստական հասարակությունը» (Վ. Ի. Լենին,* Երկեր, *հ. 31, էջ 355)։*

*Բանվոր դասակարգի առաջատար դերը շատ ավելի մեծ չափով աճում է զարգացած սոցիալիզմի պայմաններում։ Կուսակցությունը բանվոր դասակարգի հեղափոխական, ավանգարդային դերի մասին մարքս-լենինյան տեսությունը զարգացրեց նաև ՍՄԿԿ երրորդ ծրագրում, նշելով, որ «...բանվոր դասակարգը սովետական հասարակության ամենաառաջավոր, կազմակերպված ուժն է, նա իր ղեկավար դերն իրագործում է նաև ծավալուն կոմունիստական շինարարության ժամանակաշրջանում։ Հասարակության ղեկավարի իր դերի կատարումը բանվոր դասակարգը կավարտի կոմունիզմի կառուցմամբ, երբ կվերանան դասակարգերը» (*ՍՄԿԿ ծրագիրը, *«Հայաստան» հրատ., 1974, էջ 157)։*

*Բանվոր դասակարգի առաջատար դերը մեծ ուժով, նոր փաստարկներով շեշտվեց հատկապես կուսակցության վերջին համագումարներում։ «Բանվոր դասակարգը եղել է ու մնում է հասարակության հիմնական արտադրաուժը։ Նրա հեղափոխականությամբ, կարգապահությամբ, կազմակերպվածությամբ և կոլեկտիվիզմով է որոշվում նրա առաջատար դիրքը սոցիալիստական հասարակական հարաբերությունների սիստեմում։*

*Բանվոր դասակարգի՝ որպես կոմունիզմի կառուցողի, առաջատար դերը ամրապնդվում է նրա ընդհանուր կուլտուրայի, կրթվածության, նրա քաղաքական ակտիվության աճի համեմատ» (Լ. Ի. Բրեժնև,* Լենինյան կուրսով, *հ. 3, էջ 370—371)։*



*Բանվոր դասակարգը շարունակում է պահպանել ու բազմապատկել հասարակության առաջատար ուժի իր ավանդական հատկանիշները, դրանք հարստացնել նոր գծերով, որոնք թելադրվում են և օբյեկտիվորեն բխում սոցիալ-տնտեսական զարգացման ու գիտատեխնիկական հեղափոխության արդի պահանջներից։ Ինչպես նշեց կուսակցության XXVI համագումարը, բարձրանում է* բանվոր դասակարգի *դերը հասարակության կյանքում, որը, անշուշտ, կապված է նրա գաղափարաքաղաքական հասունության, կրթվածության և պրոֆեսիոնալ որակավորման աճի հետ (տե՛ս Լ. Ի. Բրեժնև,* Լենինյան կուրսով, *հ. 8, էջ 841)։*

*Զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում բանվոր դասակարգի առաջատար դերն ապահովող կարևոր պայմաններից մեկը նրա կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումն է, որն իր հերթին կարևոր պայման է գիտատեխնիկական առաջընթացի, նրա արագացման համար։*

*Սովետական Միության բանվոր դասակարգն արտադրում է երկրի ազգային հարստության 90 տոկոսը, և դա հաստատում է այն ճշմարտությունը, որ բանվոր դասակարգն իր առաջատար դերն ապահովում է ո՛չ միայն քաղաքականապես, այլ նաև տնտեսապես։*

*Նոր հասարակարգի կառուցումը, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումը, նրա առաջընթացը գերազանցապես պայմանավորված են աշխատավորության, բանվոր դասակարգի աշխատանքային կարգապահությամբ, համապետական, կոլեկտիվիստական մտածողությամբ, հոգեբանությամբ, գիտակցականությամբ, մասսաների ստեղծագործական, հասարակական-քաղաքական ակտիվությամբ, արտադրության, երկրի կառավարմանը նրանց մասնակցությամբ։ Վերոհիշյալ գործոնները, որոնք հատուկ են եղել բանվոր դասակարգին երկրի պատմության բոլոր փուլերում, առավել կարևորվում են զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում։ Այժմ, երբ ավելի բարձր տեմպերով երկրի էկոնոմիկայի առաջընթացը հնարավոր է միայն ինտենսիվ ուղիով զարգացնելու դեպքում, հույժ հրատապ է դառնում նաև բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը։*

*Հարկ է նշել, որ մինչև այժմ պատմակուսակցական գրականության մեջ այդ պրոբլեմով զբաղվողների շրջանում չկա միասնական կարծիք բանվոր դասակարգի «կուլտուր-տեխնիկական մակարդակ» հասկացության վերաբերյալ։ Կա այն տեսակետը, թե բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակ հասկացությունը սահմանափակվում է միայն բանվորների արտադրատեխնիկական հմտությունների շրջանակներով, այն է՝ որակավորման աստիճանը, պրոֆեսիոնալ պատրաստվածությունը, տեխնիկական վարպետությունը և կրթական մակարդակը։ Ըստ մեկ այլ ըմբռնման, բանվորների կուլտուր-տեխնիկական մակարդակ հասկացությունը չի կարելի սահմանափակել վերը նշված հատկանիշներով, այլ դրանց հետ միասին այն ներառում է այնպիսի կողմեր, ինչպիսիք են ընդհանուր կուլտուրան, գաղափարատեսական մակարդակը, աշխարհայացքը, հոգևոր, ինտելեկտուալ աշխարհը, բարոյականությունը և այլն։ Ինչ խոսք, երկրորդ տեսակետն ավելի ճիշտ է բնութագրում զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակը։*

*Անշուշտ, որպեսզի բանվորն արտադրողաբար աշխատի, առաջին հերթին անհրաժեշտ է, որ նա ունենա որոշակի պրոֆեսիոնալ պատրաստվածություն, որակավորում։ Սակայն կարևոր է և այն, թե բանվորն ինչպես է վերաբերվում աշխատանքին։ Իսկ դա արդեն մեծ չափով պայմանավորված է նրա գաղափարաքաղաքական պատրաստվածությամբ, հոգևոր աշխարհի հարստությամբ, բարոյական կերպարով, ընդհանուր կուլտուրայով։ Հակասական չէ, եթե ասենք, որ այժմ, գիտատեխնիկական հեղափոխության բուռն զարգացման պայմաններում, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, արտադրության ինտենսիվ զարգացումը պայմանավորված են ո՛չ միայն և ոչ այնքան*

բանվորի սոսկ պրոֆեսիոնալ վարպետությամբ, այլև նրա անհատականությամբ, բարոյաքաղաքական հատկանիշներով, աշխատանքային կարգապահությամբ, կոլեկտիվիստական հոգեբանությամբ։ Տեղին է հիշեցնել Ֆ. Էնգելսի այն արտահայտությունը, որ «Անհատը բնութագրվում է ո՛չ միայն նրանով, թե ինչ է անում, այլև նրանով, թե ինչպես է անում» (Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը արվեստի մասին, հ. 1, «Հայպետհրատ», 1963, էջ 42)։

Բարձր կուլտուր-տեխնիկական մակարդակը պայմանավորում է նաև բարձր աշխատանքային կուլտուրա և ստեղծագործական ակտիվություն։ Որքան բարձր է բանվորի կուլտուր-տեխնիկական մակարդակը, այնքան բարձր է նրա հասարակական-քաղաքական և ստեղծագործական ակտիվությունը։

Կոմունիստական կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման, արտադրության ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, գիտությունն անմիջական արտադրաուժի վերածելու, գիտության և արտադրության կապի ամրապնդման գործում աշխատավորների, բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման հարցն ունի կարևոր նշանակություն։

Գիտատեխնիկական հեղափոխությունը հրամայաբար ստիպում է բարձրացնել բանվորի կուլտուր-տեխնիկական մակարդակը, աշխատանքային կուլտուրան, իսկ դրանք սոսկ տնտեսական նշանակություն չունեն։ Բարձրացնելով բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակը, կուսակցությունը հետապնդում է նաև մեկ այլ նպատակ՝ դաստիարակել կոմունիստական աշխարհայացքով զինված նոր մարդ։

Հարցի նման մեկնաբանումը հնարավորություն է ընձեռում տեսնելու, որ տվյալ միտումը միևնույն ձևով չի դրսևորվում սոցիալիստական և կապիտալիստական հասարակարգերում։ Կապիտալի աշխարհում բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակը սահմանափակվում է արտադրատեխնիկական, պրոֆեսիոնալ որակավորման, աշխատանքային հմտության, վարպետության շրջանակներում։ Այստեղ բացակայում են կուլտուր-տեխնիկական մակարդակ հասկացության այնպիսի բաղադրատարրեր, ինչպիսիք են աշխատանքի նկատմամբ վերաբերմունքը, հասարակությանը օգտակար լինելու զգացումը, հայրենասիրությունը, աշխատանքի բարոյական կողմը։ Նոր մարդու ձևավորման կարևոր պայմաններից են կոմունիստական աշխարհայացքը և այլ գործոններ, որոնցով սովետական բանվորը, աշխատավորը տարբերվում է կապիտալի աշխարհի անհատից։

Կուսակցությունը, անհրաժեշտ հոգատարություն ցուցաբերելով բանվոր դասակարգի հոգևոր ուժի նկատմամբ, մշակել և ստեղծել է այնպիսի պայմաններ, աշխատանքի այնպիսի համակարգ, որոնց իրականացումը նպաստում է բարձրացնելու բանվորի, աշխատավորի կուլտուր-տեխնիկական մակարդակն ավելի լայն առումով։ Ավարտված է անցումը ընդհանուր պարտադիր միջնակարգ կրթության։ Երկրում ուսուցման տարբեր ձևերում ընդգրկված է ավելի քան 100 մլն մարդ, մեր հանրապետությունում՝ 1 մլն 153 հազար։

Նման բարեփոխումները նպաստում են գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, ինչպես նաև խթանում հասարակության ընդհանուր ինտելեկտուալ, հոգևոր պոտենցիալի հարստացմանը։

Բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակ հասկացությունը նույնպես կրում է փոփոխություններ։ Զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում բանվոր դասակարգը չի բավարարվում միայն արտադրատեխնիկական հմտությունների ձեռքբերմամբ, որակավորման բարձրացմամբ։ Մեր ժամանակներում նրա հետաքրքրությունների շրջանակներն անհամեմատ ավելի լայն են։ Սոցիալիստական հասարակարգի ընձեռած հնարավորությունների շնորհիվ էապես բարձրացել է բանվորի ո՛չ միայն քաղաքական ակտիվությունը, այլև քաղաքական գիտակցությունը, կուլտուրան։ Այժմ բանվորը հիանալի գիտակցում է, որ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն իրականացնելու, նյութականացնելու համար պետք է անընդհատ բարձրացնի



իր կրթական մակարդակը, հետևի գիտության, տեխնիկայի նորույթներին, քայլի գիտատեխնիկական հեղափոխության պահանջներին համընթաց, ավելին՝ գիտակցի, որ գիտատեխնիկական առաջընթացը, վերջին հաշվով, պայմանավորված է իր կրթական, կուլտուր-տեխնիկական մակարդակի աճով։ Կրթության դերն աստիճանաբար մեծանում է, ստանում որոշիչ նշանակություն աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում արտադրության ինտենսիվ զարգացումն անհնար է առանց կրթական մակարդակի անընդհատ բարձրացման։

Բանվոր դասակարգի կրթական մակարդակի բարձրացման մասին որոշակի պատկերացում է տալիս հետևյալ համեմատությունը. ՍՍՀՄ-ում 1959 թ. յուրաքանչյուր հազար բանվորից բարձրագույն և միջնակարգ (լրիվ և թերի) կրթություն ուներ 396-ը, մեր հանրապետությունում՝ 487-ը, 1970 թ. համապատասխանաբար՝ 586-ը և 617-ը։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված յուրաքանչյուր հազար մարդուց 1939 թ. բարձրագույն և միջնակարգ (լրիվ և թերի) կրթություն ուներ 123-ը, ՀՍՍՀ-ում՝ 135-ը, 1959 թ. համապատասխանաբար՝ 433-ը և 527-ը, 1979 թ.՝ 805-ը և 868-ը, 1981-ին՝ 833-ը և 891-ը։ Ինչպես տեսնում ենք, 50-ական թվականների վերջին, 1939 թվականի համեմատությամբ, աշխատող բնակչության կրթական մակարդակն աճել է մի քանի անգամ։ ՍՍՀՄ-ում այն աճել է 3,5, մեր հանրապետությունում՝ մոտ 4 անգամ։ Իսկ արդեն ավելի քան երկու տասնամյակ հետո, 1981 թվականին, 1939 թվականի համեմատությամբ, թե՛ Միությունում, թե՛ մեր հանրապետությունում այն աճել է մոտ 8 անգամ։ Այդ աճն օրինաչափ պրոցես է։

Կրթության արդյունավետության մասին է խոսում հետևյալ փաստը։ Տնտեսագետների հաշվումներով այժմ կրթության արդյունավետության նորման կազմում է 8—10 տոկոս։ 70-ական թվականների սկզբներին երկրում ժողովրդական կրթության զարգացման համար ներդրված յուրաքանչյուր ռուբլուց երկիրը ստացել է մոտ 4 ռուբլի եկամուտ։ ՍՍՀՄ-ում ազգային եկամտի մոտ 30 տոկոսը կարելի է վերագրել կրթված աշխատողներին (տե՛ս Будущее науки. Ежегодник. М., 1974, стр. 16)։

Իրականանում է Ֆ. Էնգելսի այն կանխատեսումը, որ բանական հասարակարգում հոգևոր տարրը կպատկանի արտադրական տարրերի թվին։

Այժմ, կոմունիստական հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծման պայմաններում, կուսակցությունը ելնում է այն բանից, որ առանց գիտության նոր հասարակության կառուցումը պարզապես աներևակայելի է։ Գիտության և արտադրության սերտաճումը դառնում է գիտատեխնիկական առաջընթացն ապահովող գլխավոր պայմաններից մեկը։ Իսկ գիտության զարգացման հիմքը հասարակության ընդհանուր կրթական և կուլտուրական մակարդակի անընդհատ բարձրացումն է։ Ինչպես նշում է Վ. Ի. Լենինը, «Չի կարելի կոմունիզմ կառուցել առանց գիտելիքների, տեխնիկայի, կուլտուրայի պաշարի...» (ԵԼԺ, հ. 39, էջ 385)։

Մեր երկրի առաջընթացն այժմ տեղի է ունենում ավելի արագ, որովհետև այն հենվում է սեփական հիմքի, զարգացած սոցիալիզմի վրա, երբ անհամեմատ աճել են սովետական մարդկանց, ողջ աշխատավորության և հատկապես բանվոր դասակարգի գաղափարաքաղաքական հասունությունը, կրթվածությունը, պրոֆեսիոնալ որակավորումը, կուլտուր-տեխնիկական մակարդակը, ինչպես նաև նրա աշխատանքային, ստեղծագործական և հասարական-քաղաքական ակտիվությունը։

Կոմունիստական կուսակցությունն իր գործունեության բոլոր փուլերում անշեղորեն իրականացրել և իրականացնում է բանվոր դասակարգի առաջատար դերը։ Կուսակցությունն իր այդ քաղաքականությունը կիրագործի ընդհուպ մինչև կոմունիստական հասարակարգի լիակատար կառուցումը, մինչև դասակարգերի վերացումը։

Եթե 1939 թ. բանվոր դասակարգը կազմում էր երկրի ազգաբնակչության 33,7, 1959-ին՝ 50,2 տոկոսը, ապա 1981 թ. այն արդեն կազմել է 60,5 տո-

*կոսը (տե՛ս* Народное хозяйство СССР в 1980 г., Стат. ежегод., М., 1981, стр. 9)*։*

*Բնութագրելով բանվոր դասակարգի աճող դերը հասարակության կյանքում, ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց, որ աճում է նրա թիվը, և ներկայումս երկրում կա շուրջ 80 մլն բանվոր՝ զբաղված բնակչության երկու երրորդը, որն էլ նշանակում է, թե բանվոր դասակարգը մեղանում դարձել է ոչ թե պարզապես ամենաբազմաքանակ դասակարգը, այլև աշխատավոր ժողովրդի մեծամասնությունը։*

*Մեծ, դինամիկ զարգացում և առաջընթաց է ապրել նաև մեր հանրապետության բանվոր դասակարգը։ Մինչև սովետական իշխանության հաստատումը Հայաստանում արդյունաբերական բանվորների թիվը կազմում էր ընդամենը 4.000 մարդ։ Հայ ժողովուրդը մեծ Հոկտեմբերի շնորհիվ ձեռք բերեց ազատություն, փրկվեց ֆիզիկական բնաջնջումից և Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ միասին ձեռնամուխ եղավ նոր հասարակարգի կառուցմանը, տնտեսության նոր ճյուղերի ստեղծմանը, գիտության, մշակույթի զարգացմանը, ինչպես նաև բանվորական կադրերի պատրաստմանը։ 1922 թ. հանրապետության բանվոր դասակարգի կազմում կար 20,6 հազար մարդ, 1940 թ.՝ 93 հազար, 1965-ին՝ 455 հազար, 1980-ին՝ 835 հազար մարդ։ Եթե երկրի բանվոր դասակարգը վերջին չորս տասնամյակում աճել է ավելի քան երեք անգամ, ապա հանրապետությունում այդ նույն ժամանակաշրջանում այն աճել է ավելի քան ութ անգամ։*

*Բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման ասպարեզում Հայաստանի կոմկուսի հետևողական աշխատանքն ունեցել է այն նշանակությունը, որ այն աճել է ո՛չ միայն քանակապես, այլև բարձրացել են նրա կուլտուր-տեխնիկական մակարդակը, պրոֆեսիոնալ որակավորումը, աշխատանքային կուլտուրան, ստեղծագործական ակտիվությունը։ Իսկ այս ամենը նշանակում է, որ հանրապետության բանվոր դասակարգն իր կուլտուր-տեխնիկական մակարդակով համապատասխանում է ժամանակակից արտադրության պահանջներին։ Դրա լավագույն ապացույցը հանրապետության բուռն զարգացումն է, բազմաճյուղ, ժամանակակից առաջավոր ձեռնարկությունների առկայությունը, գիտության, մշակույթի աննախընթաց վերելքը։ Հանրապետության արդյունաբերական արտադրանքի ծավալը 1980 թ. 40 անգամ գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ Հայկական ՍՍՀ-ն արտադրում է այնպիսի արդիական ապրանքներ, որոնք չեն զիջում համաշխարհային ստանդարտներին։ Նրա արտադրանքի մեջ հատկապես նշանակալից են էլեկտրոնային հաշվիչ մեքենաները, գեներատորները, տրանսֆորմատորները, էլեկտրաշարժիչները, հաստոցները, քիմիական և այլ արտադրանքները։ Հանրապետության արդյունաբերական արտադրանքի ավելի քան 150 տեսակներ արտահանվում են աշխարհի 80 երկրներ։*

*Տնտեսության առաջատար ճյուղերի առկայությունն ու զարգացումը վկայում են, որ բարձր է նաև Հայկական ՍՍՀ բանվոր դասակարգի, ողջ աշխատավորության կուլտուր-տեխնիկական մակարդակը։ Իսկ այդ հանգամանքը զգալիորեն նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Տասներորդ հնգամյակի տարիներին աշխատանքի արտադրողականության ավելացման հաշվին ստացվել է արդյունաբերական արտադրանքի աճի 44,5 տոկոսը, իսկ դա նշանակում է, որ տնտեսվել է 72 հազար մարդու աշխատանք։*

*Բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման և բանվորական կադրերի պատրաստման գործում անգնահատելի է պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության դերը։ Տասներորդ հնգամյակում հանրապետության պրոֆտեխուսումնարանները պատրաստել են ավելի քան 140 հազար որակյալ բանվորներ՝ գրեթե այնքան, որքան պատրաստվել է պրոֆտեխկրթության համակարգի գոյության նախորդ 30 տարիներին։ Այժմ հանրապետությունում գործում են 100 պրոֆտեխուսումնարաններ, որոնցից 54-ը՝ միջնակարգ կրթությամբ։ Հնգամյակի տարիներին հանրապետության ձեռնար-*



*կություններում և կազմակերպություններում պատրաստվել և վերապատրաստվել են ավելի քան 920 հազար բանվորներ։*

*Սակայն այս գործում դեռևս կան էական թերություններ, որի համար և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում միանգամայն իրավացիորեն քննադատական խոսք ասվեց հանրապետության պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության պետական կոմիտեի հասցեին։ Մասնավորապես նշվեց, որ ի վնաս առավել կարևոր, անհրաժեշտ մասնագիտությունների, պատրաստվում են պահանջվածից ավելի ոչ դեֆիցիտային մասնագետներ։ Հատկանշական է համագումարում բերված հետևյալ համեմատությունը։ Մեքենաշինության մեջ վերջին 15 տարվա ընթացքում այդ ճյուղի ձեռնարկությունները ստեղծել են ընդամենը 4 նոր պրոֆտեխուսումնարան՝ 2.000 աշակերտական տեղով, և դա այն դեպքում, երբ ճյուղում բանվորների թիվն աճել է 70 հազարով։*

*Բանվորների, աշխատավորների բարձր կրթական մակարդակի ապահովումը թելադրվում է գիտատեխնիկական հեղափոխությամբ։ Որքան բարդ են ժամանակակից արտադրությունը, տեխնիկան, որքան շատ գիտական տարրեր են ներառում դրանք իրենց մեջ, այնքան բարձր կրթական մակարդակ է պահանջվում բանվորից, աշխատավորից։ Մյուս կողմից, բանվորների, աշխատավորների բարձր կրթական, կուլտուր-տեխնիկական մակարդակն զգալիորեն նպաստում է աշխատանքի արտադրողականության և ստեղծագործական ակտիվության բարձրացմանը, գյուտարարական, նորարարական աշխատանքներին նրանց ակտիվ մասնակցությանը, սոցիալիստական մրցության ծավալմանը։*

*Տասներորդ հնգամյակի տարիներին հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել են 1918 գյուտ և 91,5 հազար ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնց շնորհիվ տնտեսվել են 248,3 մլն ռուբլու աշխատանքային, նյութական ու էներգետիկ ռեսուրսներ։ Հնգամյակի ընթացքում գիտատեխնիկական ընկերությունների անդամների թիվն ավելացել է 15 հազարով, այդ թվում բանվոր-նորարարներինը՝ 6.500-ով, սկզբնական կազմակերպություններինը՝ 100-ով։ 1982 թ. հանրապետությունում սոցիալիստական մրցության մեջ ընդգրկված շուրջ մեկ միլիոն բանվորների, կոլտնտեսականների, ինժեներատեխնիկական աշխատողների ու ծառայողների կեսից ավելին մասնակցում են աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը։ Միաժամանակ հանրապետությունում գործում են 5.514 կոմունիստական աշխատանքի դպրոցներ՝ շուրջ 141 հազար անդամներով։*

*Այդ բոլորի շնորհիվ բարձրանում է որակյալ արտադրանքի ծավալն ընդհանուր հաշվեկշռում։ Արտադրանքի ընդհանուր ծավալում նրա տեսակարար կշիռն այժմ կազմում է մոտ 20 տոկոս։*

*Խոսելով գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում բանվորների դերի, նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման մասին, ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը Հայաստանի արհմիությունների XVI համագումարում ասաց, որ ժամանակակից բարդ, բարձրորակ արտադրատեսակների ստեղծումը հնարավոր չէ ապահովել առանց աշխատավորական կոլեկտիվի անդամների կուլտուր-տեխնիկական մակարդակի և որակավորման աճի։ Մյուս կողմից էլ՝ «ամենախելոք» մեքենաներն իսկ չեն տա անհրաժեշտ արդյունքը, եթե բացակայում են դրանք շահագործող հմուտ, բանիմաց մարդիկ։ Հաշված է, որ ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունը տարեկան ծնում է առնվազն 500 նոր մասնագիտություններ, որոնց տիրապետումը տեխնիկական շատ գիտելիքներ ու հմտություններ է պահանջում։*

*Կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակը մեծապես նպաստում է անհատի, բանվորի հասարակական-քաղաքական ակտիվության աճին, ակտիվ կենսադիրքորոշման հաստատմանը։ Հաշված է, որ 5—6-րդ դասարանի կրթությամբ փականագործ գործիքագործը մեկ կարգից մյուսին անցնելու համար ծախսում է միջինը 5 տարի, 7-րդ դասարանի կրթությամբ՝ ավելի քան 3,8, 9-րդ դասարանի կրթությամբ՝ 2—3, միջնակարգ կրթությամբ՝ 1, երբեմն*

էլ 1,5 տարի։ Բարձրագույն կրթությամբ բանվորների ակտիվությունը տեխնիկական ստեղծագործության բնագավառում 30—80 անգամ բարձր է տարրական կրթությամբ բանվորներից։ Հենց այս հանգամանքը նկատի ուներ Հայաստանի կոմկուսի XXVII համագումարը, որը խնդիր դրեց 1982 թվականից որակյալ բանվորներ պատրաստել միմիայն միջնակարգ կրթությամբ։ Վերոհիշյալ հանգամանքը բացատրվում է նաև նրանով, որ մեր ժամանակներում արդեն հաշվվում են ավելի քան 380 բանվորական մասնագիտություններ, որոնց տիրապետելը պահանջում է միջնակարգ կրթություն։

Բանվոր դասակարգի կրթական, կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը թելադրվում է նաև այն հանգամանքով, որ կուսակցությունը խնդիր է դնում 80-ական թվականներին ավարտել երկրի ամբողջ տնտեսության շրջադարձը դեպի ինտենսիվ զարգացումը, է՛լ ավելի բարձրացնել աշխատանքի արդյունավետությունը, որակը, արագացնել գիտատեխնիկական առաջընթացը, աշխատանքի մեքենայացումը, ավտոմատացումը։ Նման խնդիրների իրականացման հուսալի ուղիներից մեկը կուսակցության բազմակողմանի, բազմաբեղուն տնտեսական-կազմակերպչական աշխատանքից, գիտության և արտադրության կապի ամրապնդումից բացի, աշխատավորների և, առաջին հերթին, բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումն է։

Հանրապետությունում տասներորդ հնգամյակի տարիներին զգալի աշխատանք է կատարվել տեխնիկական առաջընթացի արագացման առումով։ Արդյունաբերության մեջ վերակառուցվել և տեխնիկապես վերազինվել են 135 ձեռնարկություն և 1.764 արտադրամաս, արմատավորվել են 360 մեքենայացված ու ավտոմատ հարահոս գիծ, 107 կոմպլեքսացված արտադրամաս ու տեղամաս, կատարելագործվել են 4.000 միավոր արտադրական սարքավորում, հաշվիչ մեքենաների համակազմը հասել է գրեթե 200 միավորի, յուրաքանչյուր երրորդ աշխատատեղը կահավորված է՝ հաշվի առնելով աշխատանքի գիտական կազմակերպման պահանջները։

Հարկ է նշել, սակայն, որ ինչպես երկրում, այնպես էլ հանրապետությունում դեռևս մեծ է ձեռքի աշխատանքի բաժինը արտադրության մեջ։ Նյութական ոլորտի աշխատողների մոտ կեսը զբաղված է ձեռքի աշխատանքով, արդյունաբերության մեջ՝ մոտ երկու հինգերորդը, իսկ շինարարության, գյուղատնտեսության, ինչպես նաև բեռնման-բեռնաթափման օպերացիաներում՝ ավելի շատ։ Այդ ցուցանիշը շատ բարձր է նաև մեր հանրապետությունում, հատկապես օժանդակ ու բեռնման-բեռնաթափման աշխատանքներում, ինչպես և արդյունաբերության առանձին ճյուղերում, որտեղ այն հասնում է 30—40 տոկոսի։

Ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում, հանրապետության «Սևան» արտադրամիավորումում ձեռքի աշխատանքի բաժինը կազմում է 43 տոկոս, որի հետևանքով տասներորդ հնգամյակի տարիներին միավորումը պետական որականիշով արտադրանք չի թողարկել։ Մինչդեռ Երևանի ավտոդողերի գործարանում պետական որականիշով արտադրանքի թողարկումը հասնում է 70 տոկոսի, Կիրովականի ավտոգենային մեքենաշինության գործարանում՝ 78 տոկոս է, «Հայէլեկտրասարքավորում»... 

Ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում, հանրապետության «Սևան» արտադրամիավորումում ձեռքի աշխատանքի բաժինը կազմում է 43 տոկոս, որի հետևանքով տասներորդ հնգամյակի տարիներին միավորումը պետական որականիշով արտադրանք չի թողարկել։ Մինչդեռ Երևանի ավտոդողերի գործարանում պետական որականիշով արտադրանքի թողարկումը հասնում է 70 տոկոսի, Կիրովականի ավտոգենային մեքենաշինության գործարանում՝ 78 տոկոս է, «Հայէլեկտրասարքավորում» արտադրամիավորումում՝ 70, «Հայէլեկտրաշարժիչում»՝ 66, «Հայէլեկտրալույսում»՝ 61, կարի «Գարուն» արտադրամիավորումում՝ 69, Երևանի էլեկտրատեխնիկական գործարանում՝ 96,1 տոկոս։

Արտադրական ու տնտեսական բարձր ցուցանիշները, անկասկած, արդյունք են կոլեկտիվների կուսակցական, տնտեսական, հասարակական կազմակերպությունների համատեղ հետևողական աշխատանքի, նրանց անդամների նկատմամբ անհրաժեշտ հոգատարության, աշխատողների կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակի, կոլեկտիվների սոցիալական զարգացման ճիշտ, գիտական պլանավորման, կոլեկտիվի ու անհատի շահերի հմուտ զուգակցման։

ՍՄԿԿ XXVI համագումարը բարձր գնահատեց հանրապետության կուսակցական կազմակերպությունների աշխատանքը արդյունաբերական արտադրանքի որակի բարձրացման ասպարեզում։ Նման գնահատականն առաջին հերթին վերաբերում է հանրապետության բանվոր դասակարգին, որը կյանքի է կոչում կուսակցության կանխագծումները։

Բանվոր դասակարգի քանակական և որակական աճը, նրա կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը, ստեղծագործական ակտիվությունն այն գլխավոր ուղին է, որի շնորհիվ է՛լ ավելի է բարձրանում աշխատանքի արտադրողականությունը, հասարակության ընդհանուր կուլտուրան։ Խորապես իրավացի էր Վ. Ի. Լենինը, որն աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր պայմաններից մեկը համարում էր բնակչության մասսայի կրթական և կուլտուրական վերելքը (տե՛ս ԵԼԺ, հ. 36, էջ 231)։

Բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման կուսակցական ղեկավարությունն օբյեկտիվ պրոցես է, անհրաժեշտություն, այն նպաստում է գիտության անմիջական արտադրաուժի վերածմանը, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մերձեցմանը, դրանց միջև եղած էական տարբերությունների վերացմանը, նոր մարդու դաստիարակմանը։ Բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման անհրաժեշտությունը պայմանավորված է նաև այն հանգամանքով, որ զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում մեծանում է սուբյեկտիվ գործոնի՝ անհատի դերը, որի ինտելեկտուալ մակարդակով, ընդհանուր և աշխատանքային կուլտուրայով է զգալիորեն պայմանավորված երկրի առաջընթացը։

Հանրապետության կուսակցական կազմակերպություններն իրենց ուշադրության կենտրոնում են պահում բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման հարցերը, ստեղծելով որակյալ բանվորական կադրերի պատրաստման կուռ սիստեմ, որը համապատասխանում է ժամանակի պահանջներին և գիտատեխնիկական հեղափոխության առաջադրած խնդիրներին։

# ՀԱՄԸՆԴՀԱՆՈՒՐ ԶԲԱՂՎԱԾՈՒԹՅԱՆ ՕՐԵՆՔԻ ԱՐԴԻ ԴՐՍԵՎՈՐՈՒՄՆԵՐԸ

**Հ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

*ՀԱՍՈՒՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ արդի փուլում տնտեսական օրենքների գիտական իմացումն ու օգտագործումը առավել ակտիվ ներգործություն են ունենում նյութական արտադրության, ողջ հասարակական պրակտիկայի վրա։ «Կյանքի առաջադրած խնդիրները,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում,— պահանջում են զարգացնել տեսությունը, տնտեսագիտությունը, այն մոտեցնել տնտեսական պրակտիկայի կարիքներին»* (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, *էջ 82)։*

*Սովետական տնտեսագիտությունը շոշափելի հաջողությունների է հասել տնտեսական օրենքների գիտական ճանաչման, սիստեմավորման և դրանց գործողության մեխանիզմի հետազոտման բնագավառում։ Արդ, տնտեսական օրենքների գործողության մեջ տեղի ունեցող փոփոխություններն ավելի ցայտունորեն են դրսևորվում։ Հենց այս փոփոխությունների ուսումնասիրությունն անհրաժեշտաբար առաջնային է դառնում ինչպես տնտեսական պրակտիկայում, այնպես էլ էկոնոմիկայի և հասարակական կյանքի զարգացման հեռանկարների կանխորոշման առումով։ Սոցիալիստական էկոնոմիկայի հասունության նոր աստիճանը, արտադրաուժերի և արտադրահարաբերությունների զարգացման նոր մակարդակը բնականաբար կանխորոշում են արդի փուլում տնտեսական օրենքների գործողության կարևոր առանձնահատկությունները։*

*Կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում համընդհանուր զբաղվածության տնտեսական օրենքը գործում էր անցյալից ժառանգած հետամնաց նյութաարտադրական բազայի, քաղաքներում աշխատուժի պահեստաբանակի և գյուղերում ագրարային գերբնակչության առկայության պայմաններում։ Այս փուլում զբաղված բանվոր-ծառայողների թվաքանակի ավելացումը տեղի էր ունենում ինչպես բնակչության բնական աճի, այնպես էլ աշխատուժի պահեստաբանակից աշխատողների մի զգալի մասին արտադրության պրոցես ներգրավելու շնորհիվ։ Արագորեն զարգացող արդյունաբերության համար առկա էին նոր կադրերի գոյավորման երկու հիմնական աղբյուրներ՝ քաղաքների բաներիտ դպրոցների սովորողները և գյուղական վայրերից քաղաքներ եկողները։ ՍՍՀՄ պետպլանի տվյալներով 1928—1932 թթ. աշխատանքի բոլոր բնագավառներ ներգրավվեցին մոտ 12,5* մլն *մարդ, որից 4 միլիոնը քաղաքաբնակներ էին, իսկ մնացածը՝ գյուղերից եկածներ։ Հայրենական մեծ պատերազմն ընդհատեց սոցիալիզմի խաղաղ շինարարությունը, բացասական ներգործություն ունեցավ աշխատուժի գոյավորման աղբյուրների վրա։*

*Այժմ արտադրությանը բնորոշ են առաջընթացի ինտենսիվ գործոնները։ Բանվոր-ծառայողների թվաքանակը 1966 թվականի 79,7 միլիոնից 1980 թվականին դարձավ 112,5* մլն *մարդ, սակայն աշխատողների թվաքանակի աճի տեմպերը նվազել են։ Դա նշանակում է, որ պրոգրեսն առավել մեծ չափով պետք է իրականանա աշխատանքի որակի բարձրացման, այսինքն՝ արտադրության պրոցեսում աշխատողների որակավորման, նրանց ընդհանուր զար-*



*գացման մակարդակի և ստեղծագործական ակտիվության բարձրացման, տեխնիկական առաջընթացի հիման վրա աշխատանքի բարելավման ուղիով։*

*Արդի պայմաններում համընդհանուր զբաղվածության նյութական հիմքը հասարակական արտադրության զարգացման բարձր ու կայուն տեմպերն են, արդյունաբերության ու գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված հաջողությունները։ Միայն համընդհանուր զբաղվածության հիման վրա են պայմաններ ստեղծվում արտադրաուժերի վերելքի, անհատի համակողմանի զարգացման, հասարակական տնտեսական կյանքում նրանց աշխատանքային ակտիվության համար։ Մեր երկրում ձեռք է բերվել աշխատունակ բնակչության զբաղվածության բարձր մակարդակ։ Եթե 1950 թ. հանրային արտադրության և ուսման մեջ զբաղված աշխատունակ բնկչությունը կազմում էր 74 տոկոս, 1960 թ.՝ 78, ապա այժմ՝ մոտ 94 տոկոս։ Նշված տեղաշարժերը հիմնականում արտացոլում են անհրաժեշտ պայմանների ստեղծման միջոցով կանանց հանրային տնտեսություն ներգրավելը։ Բացի այդ, սա նշանակում է նաև, որ աշխատուժի համալրման հիմնական աղբյուրը մնում է աշխատունակ բնակչության բնական աճը։ Սակայն վերջին տարիներին ծննդաբերության կրճատման հետևանքով այս աղբյուրը նույնպես նվազել է։ Եթե 1950—1960-ական թթ. բնական աճը բնակչության հազար մարդու հաշվով կազմել է 17—18 մարդ, ապա 1961—1970 թվականներին այն իջել է մինչև 9—11 մարդու (այժմ՝ մոտ 9 մարդ)։ Ուստի այս պայմաններում գլխավորը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։*

*ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց, որ «80-ական թվականների պայմաններում հատուկ նշանակություն է ստանում աշխատանքային ռեսուրսների նկատմամբ հոգատար, խնայողական վերաբերմունքը։ Դա բարդ գործ է, որը պահանջում է տնտեսական, տեխնիկական, սոցիալական, դաստիարակչական բնույթի շատ խնդիրների լուծում»* (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, *էջ 67)։ Արտադրության ինտենսիվացման արդի պայմաններում զգալիորեն նվազում է աշխատողների թվաքանակի ավելացման դերը։ Ժողովրդական տնտեսության մեջ զբաղվածների աճի միջին տարեկան տեմպը 1961—1970 թվականների 2,45 տոկոսից նվազել և 1971—1979 թվականներին կազմել է 1,7 տոկոս։ Դրա հետ մեկտեղ, սակայն, որոշակիորեն բարձրացել է աշխատողների կրթական մակարդակը։ Համամիութենական մարդահամարների տվյալներով բարձրագույն (լրիվ և թերի) և միջնակարգ (ընդհանուր և մասնագիտական) կրթությամբ անձինք աշխատող բնակչության մեջ կազմել են 1950 թվականին՝ 17, 1970-ին՝ 34 և 1979-ին՝ 54 տոկոս։*

*Հատկանշական է մեկ այլ փոփոխություն ևս։ 70-ական թվականներին կրճատվում էր ոչ լրիվ միջնակարգ կրթությամբ աշխատողների թվաքանակը, որը պայմանավորված էր համընդհանուր միջնակարգ կրթության անցման ավարտումով։*

*Այսպիսով, մեզ մոտ աշխատողների շարքերը համալրվում են բնակչության և հատկապես երիտասարդության ամենակրթված մասի հաշվին։ Ուշագրավ է և այն, որ աշխատողների կրթական մակարդակի աճի հետ մեկտեղ ավելանում է ուսուցման տևողությունը։ Այսպես, եթե 1959 թվականին յուրաքանչյուր աշխատող սովորել է միջինը մոտ 6 տարի, 1970 թվականին՝ ավելի քան 7,5 տարի, ապա 1979-ին՝ ավելի քան 9 տարի։ Ուսումնասիրությունները վկայում են, որ հեռանկարում նույնպես աշխատողների կրթական մակարդակը զգալիորեն կաճի, ինչպես նաև կավելանա ուսման միջին տևողությունը։ Սովետական տնտեսագետների հաշվարկներով աշխատուժի որակի բարձրացման հաշվին ստացվում է երկրի ազգային եկամտի աճի մոտ մեկ երրորդը։ Այն զբաղված բնակչության համար պայմաններ է ստեղծում հասարակության տեսանկյունից նպատակահարմար ձևով աշխատանքային գործունեության մի տեսակից մյուսին անցնելուն, դրսևորման լայն ասպարեզ բացում համընդհանուր զբաղվածության տնտեսական օրենքի համար։ Այս օրենքը, ինչպես նրշվեց, ենթադրում է սոցիալիստական աշխատողի համընդհանուր զբաղվածություն, աշխատուժի վերարտադրության որակական կատարելագործում։ Կենդանի աշխատանքի արդյունավետության բարձրացման խնդրի նշանակու-*

տեխնիկայից ստացված աշխատանքի տնտեսումը իրացնելու ավելցուկ աշխատողների ազատման ճանապարհով։

Այդ ժամանակ ձեռնարկությունները կամ նոր տեխնիկա են կիրառում առանց դրա արդյունքի իրացման, կամ ստիպված են հրաժարվել դրանից։ Ե՛վ մեկը, և՛ մյուսը չեն համապատասխանում հասարակության շահերին և հակասում են տեխնիկական առաջընթացի արագացմանը։ Տվյալ պարագայում նոր, արդյունավետ տեխնիկայի զարգացումը պետք է զուգակցել համընդհանուր զբաղվածության սկզբունքի հետ։ Իսկ դրա համար ձեռնարկություններում վերացվել են ազատվող աշխատողներին պարտադիր աշխատանքի տեղավորելու ֆունկցիաները (չնայած որոշակիորեն նման ֆունկցիաներ այնուամենայնիվ պահպանվում են) և հիմնական դերն այժմ հատկացված է աշխատանքի պետական կոմիտեին և նրա տեղական մարմիններին։ Բոլոր մակարդակների համար վերջիններս կազմում են աշխատանքի հաշվետու և պլանային հաշվեկշիռներ, որի գործնական նշանակությունը համընդհանուր զբաղվածության սկզբունքի իրականացման գործում մեծ է։ Սոցիալիստական հասարակարգը յուրաքանչյուր աշխատունակ քաղաքացու համար ապահովել է աշխատանքի իրավունք։ Բայց այստեղից ամենևին չի հետևում, թե հասարակությունը պարտավոր է յուրաքանչյուրին աշխատանքի տեղավորել հենց նրա ցանկացած ձեռնարկությունում, եթե դա նպատակահարմար չէ։ Նման մոտեցումը, անկասկած, կհակասի հասարակական շահերի առաջնության սկզբունքին։ Սակայն գործնականում իներցիայի ուժը հաճախ խանգարում է աշխատողների այդպիսի վերաբաշխմանը։

Արտադրապրոցեսների ինտենսիվացման, աշխատողի օրգանիզմի վրա նյարդահոգեկան և հուզական ծանրաբեռնվածության աճի պայմաններում զգալիորեն բարձրացել են անհատի բարոյակամային և հոգեֆիզիոլոգիական հատկություններին (պատասխանատվություն, ինքնուրույնություն, ռեակցիայի արագություն, ուշադրության համակենտրոնացման աստիճան) հարուցվող պահանջները։ Նշված որակները մեծ չափով պայմանավորված են մարդկանց սեռահասակային ցուցանիշներով և դրանք պարտադիր կերպով պետք է հաշվի առնվեն նրանց աշխատանքի ներգրավելու պրոցեսում։

Հետևապես, այժմ մարդկանց չի կարելի աշխատանքի տեղավորել հենց այնպես։ Խոսքն այն մասին է, որ քաղաքացիներն աշխատանքի ներգրավվեն ժողովրդական տնտեսության այս կամ այն կոնկրետ ճյուղում՝ որոշակի մասնագիտությամբ և բարդության որոշակի աստիճանով աշխատանքների կատարման համար։ Զարգացած սոցիալիստական հասարակարգի աշխատունակ բոլոր անդամների ներգրավումը հանրօգուտ աշխատանքի՝ նրանց ընդունակություններին և որակավորմանը համապատասխան, հնարավորություն է ընձեռում արդյունավետ օգտագործելու երկրի բնակչության անընդհատ ավելացող կրթական պոտենցիալը, բարենպաստ սոցիալական պայմաններ է ստեղծում գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար, կարևոր դեր է խաղում նոր մարդու կերպավորման գործում։ Ահա թե ինչու այսօր առանձնակի կարևորություն է ստանում նաև աշխատանքային ռեսուրսների օգտագործման սոցիալական առումը։ Այժմ արտադրության աշխատողը կուլտուր-կրթական և մասնագիտական բարձր պատրաստության հետ միաժամանակ պատրաստակամություն և կարողություն պետք է ունենա իր գիտելիքների պաշարը, գործնական ունակությունները հարստացնելու և անհրաժեշտության դեպքում մասնագիտությունը փոխելու համար։

Աշխատանքային ռեսուրսների զբաղվածության կազմավորման նոր երևույթ է դրանց օգտագործման ռեգիոնալ սկզբունքը։ Արտադրության կառուցվածքի, բնակչության դինամիկայի և սեռահասակային կազմի, ապրելակերպի փոփոխման, շարժունության հետևանքով տարբերություններ կան նաև երկրի առանձին շրջաններում աշխատուժով ապահովվածության բնագավառում։ Արդեն 80-ական թվականներին գործնականորեն աշխատունակ տարիքի բնակչության թվաքանակի ամբողջ աճը կենտրոնանալու է Ղազախստանում, Միջին Ասիայի և Անդրկովկասյան հանրապետություններում, որտեղ (առավելապես գյուղական վայրերում) կան աշխատուժի որոշակի ռեզերվներ։ Միաժամանակ, նշված շրջանների հատկապես խոշոր քաղաքներում դժվարություններ կան նոր ձեռնարկությունների անձնակազմերի կոմպլեկտավորման գործում, որը մինչև վերջին ժամանակներս հաղթահարվում էր այլ հանրապետություններից եկող կադրերի հոսքի հաշվին։



Տնտեսական այն շրջաններում, որտեղ գյուղական վայրերում կան աշխատուժի ռեզերվներ և աշխատունակ տարիքի հասած երիտասարդ մարդկանց կոնտինգենտ, բնակչության տեղաշարժի ակտիվությունը, որակյալ կադրերի պատրաստման բարելավումը աշխատանքի կիրառման (հատկապես արդյունաբերության մեջ) ոլորտի ընդլայնման թերևս միակ արդյունավետ ուղին է։

Աշխատուժի նկատմամբ պահանջի և դրա առկայության միջև 70-ական թվականներին ծագած անհամապատասխանությունը բացասաբար ազդեց աշխատանքային ռեսուրսների օգտագործման վրա, խանգարեց խստագույն կարգապահության և աշխատանքի լիարյուն ռիթմի հաստատմանը, աշխատավորական կայուն կոլեկտիվներ ստեղծելուն, առանձին ձեռնարկությունների և հիմնարկությունների ղեկավարներին մղեց «ռեզերվային բանվորներ» ունենալու պրակտիկային։ Ուստի աշխատուժի նկատմամբ պահանջի և առկա իրավիճակի միջև համապատասխանության ապահովումն հանրային արտադրության ինտենսիվացման կարևորագույն պայմանն է։

Աշխատանքային ռեսուրսների պակասը բխում էր և նրանից, որ երկարատև ժամանակաշրջանի ընթացքում արտադրության զարգացման նախատեսվող բնագծերին ձեռնարկությունները հասնում էին աշխատողների թվաքանակի զգալի ավելացման հաշվին։ Տնտեսական ղեկավարները զբաղվածության բարձր մակարդակի պայմաններում խորամուխ չէին լինում աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերում, ձգտում էին աճի բարձր տեմպեր ապահովել նորանոր կարողությունների մեծացման հաշվին, մոռանալով համապատասխան աշխատող ձեռքերի թվաքանակի առկայությունը։

Աշխատանքային ռեսուրսների զբաղվածության պրոբլեմի հրատապությունը ոչ միայն երկրում տիրող դեմոգրաֆիական իրավիճակի հետևանք է։ Դրա պատճառները պետք է փնտրել նաև տնտեսավարման ու տնտեսական լծակների բնագավառում։ Աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի արագացումը ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած սոցիալ-տնտեսական խնդիրների իրականացման գլխավոր պայմաններից է։

Այսպիսով, սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման արդի փուլը կանխորոշում է համընդհանուր զբաղվածության օրենքի գործողության որոշակի առանձնահատկություններ, որի համակողմանի հաշվառումն ունի և՛ տեսական, և՛ գործնական կարևոր նշանակություն՝ հասարակության աշխատանքային գիտականորեն հիմնավորված պոտենցիալի բաշխման ու օգտագործման, աշխատունակ բնակչության համընդհանուր զբաղվածություն ապահովելու համար։

# ՏՈՒ՛Ր ՁԵՌՔԴ, ՅԱԿՈՒՏԻԱ

## (ԺՈՒՌՆԱԼԻՍՏԻ ԾՈՑԱՏԵՏՐԻՑ)

«Աշխատանքներ ծավալել Բայկալ—Ամուր մայր երկաթուղուն հարող գոտու տնտեսական յուրացման ուղղությամբ... Շարունակել Հարավային Յակուտիայի տերիտորիալ-արտադրական կոմպլեքսի կազմավորումը, ավարտել ածխահանքի հարստացուցիչ ֆաբրիկայի և Ներյունգրիի ՊՇԷԿ-ի առաջին հերթի շինարարությունը: Մշակել Հարավային Յակուտիայի երկաթի հանքավայրի յուրացման, ինչպես նաև Բերկակիտ—Տոմոտ—Յակուտսկ երկաթուղու կառուցման տեխնիկատնտեսական հիմնավորումներ»:

*ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընդգրկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններից*

ԵՐՋԱՆԻԿ ԱՌԻԹՆ ՈՒՆԵՑԱ մեկնելու հեռավոր Յակուտիա և մասնակցելու Ներյունգրի քաղաքում հրավիրված ժուռնալիստների համամիութենական թռուցկաժողովի աշխատանքներին: Միջոցառման թեման էր՝ «Մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի դերը Հարավյակուտական տերիտորիալ-արտադրական կոմպլեքսի ձևավորման փորձի ու պրոբլեմների լուսաբանման գործում»:

Նման լավ առիթը հնարավորություն ընձեռեց մի քանի օրվա ընթացքում շատ բան տեսնելու երկրի հյուսիս-արևելյան այդ զարմանահրաշ անկյունում, մոտիկից զգալու տասնմեկերորդ հնգամյակի խոշոր կառույցներից մեկի՝ Հարավ-Յակուտական տերիտորիալ-արտադրական կոմպլեքսի արարման հերը, հիանալու բազմազգ այն մարդկանց տիտանական աշխատանքով, որոնք ձեռքձեռքի տված ձեռնամուխ են եղել կուսակցության պատվավոր ու պատասխանատու առաջադրանքի կենսագործմանը:

...Մեր ՏՈՒ—154 ինքնաթիռը Մոսկվայից դուրս եկավ առավոտյան ժամը 8 և կեսին և, վայրէջք կատարելով Նովոսիբիրսկում ու Բրատսկում, Յակուտսկ հասավ ժամը 20-ին: Հենց այդտեղ, օդանավակայանում, մի կին ինձնից ժամը հարցրեց:

— 20-ն անց է 15 րոպե,— պատասխանեցի:

Շնորհակալության փոխարեն նա քմծիծաղ տվեց և գլուխն օրորելով ասաց.

— Համա՜ թե կատակասերն եք:

Ես գլխի չընկա ինչումն է բանը, մինչև որ մեզ դիմավորելու եկած տեղի ժուռնալիստների միության ներկայացուցիչ Նիկոլայ Խարիտոնովը պարզեց գաղտնիքը:

— Մեզ մոտ, սիրելիս, վաղուց կեսգիշեր է,— ասաց նա, բարեկամաբար խփելով ուսիս,— և ժամացույցն էլ 2-ն է ցույց տալիս: Չէ՞ որ մենք Մոսկվայի հետ տարբեր ժամային գոտիներում ենք գտնվում և 6 ժամով առաջ ենք: Մեր բախտը բերել է՝ Նոր տարին 6 ժամ շուտ ենք դիմավորում:

Ես, իհարկե, գիտեի ժամային գոտիների մասին, բայց ոչ այդքան կոնկրետ: Զարմանք էր պատճառում նաև օրվա տվյալ ժամի համար անսովոր բնական լույսը: Առանց հարցումի սպասելու, դրա պատասխանն էլ տվեց Նիկոլայ Իվանովիչը:

— Հիմա սպիտակ գիշերներ են,— բացատրեց նա, սրամտորեն նկատելով,— դա էլ էլեկտրաէներգիայի խնայողության մեր ռեզերվն է:

Սիբիրի համար առաջնակարգ «Լենա» հյուրանոցում տեղավորվելուց հետո, մենք՝ չկլիմայավարժված մի քանի ընկերներ, մինչև լուսաբաց, այսինքն՝ մեր ժամանակով մինչև կեսգիշեր, չկարողացանք քնել: Մինչդեռ արևածագից հետո միահամուռ աչքներս էինք տրորում: Եվ այդպես մեկ-երկու օր: Հետո սովորեցինք:

Երևանի ժամանակով գիշերա 1-ին արթնանում էինք, բարի լույս ասում իրար և առավորականի պես գնում մեր գործին:

Յակուտիան յուրօրինակ երկիր է, զարմանալի իր բնական ինքնատիպությամբ ու կոնտրաստներով, զարգացման մասշտաբներով ու տեմպերով: Զբաղեցնում է մի վիթխարի տարածություն՝ մեր երկրի տերիտորիայի յոթերորդ մասը և աչքի է ընկնում կոնտինենտալ սուր կլիմայով: Արևելյան ու արևմտյան ծայրակետերի հեռավորությունը 2.500 կիլոմետր է՝ շատ ավելի, քան Երևանից Մոսկվա ձգվող ուղին: Տարածքը 3 միլիոն 103 հազար քառակուսի կիլոմետր է՝ տեղավորված ժամային 3 գոտիներում, որոնք մոսկովյան ժամանակից տարբերվում են 6, 7 և 8 ժամով:

Ինքնավար հանրապետության բնակչությունը մոտ 900 հազար է, մեկ քառակուսի կիլոմետրին ընկնում է 0,3 մարդ: Հանրապետական ենթակայության 3 քաղաք ունի՝ Յակուտսկը, Միրնին և Ներյունգրին: Քաղաքատիպ ավաններ՝ 65, գյուղսովետներ՝ 316: Ամենուրեք երկրաբանահետախուզական աշխատանքներ են իրագործվում: Միայն անցած հնգամյակի տարիներին ՍՍՀՄ պաշարների պետական հանձնաժողովի կողմից հաստատվել են 15 հանքավայրերի պաշարներ, արդյունաբերական յուրացման են հանձնվել օգտակար հանածոների հարյուրից ավելի հանքավայրեր:

Աննկարագրելի գեղեցիկ, առինքնող ու կախարդիչ է երկրամասի գլխավոր ջրային զարկերակը՝ Լենան: «Ստնտու Լենա». այսպես են կոչում բնիկներն իրենց մայր գետը, որ որպես կենսատու երակ 4 հազար 400 կիլոմետր ձըգվում է հանրապետության համարյա ողջ տարածքով և հանգրվանում Հյուսիսային սառուցյալ օվկիանոսում: Յակուտսկի մոտ գետն իրական մի ծով է, ափից՝ ափ 10—12 կիլոմետր լայնք ունի և ներկայված է սիզավետ մարգագետիններով, եղևնու ու կեչու անտառներով: Հայրենի եզերքի ջրամատակարարման միակ աղբյուրը հանդիսանալով՝ Լենան միաժամանակ տրանսպորտային հզոր մայրուղի է: Այնքան խորն է, որ նրանով ազատ երթևեկում են «գետ—ծով» տիպի բոլոր նավերը:

Հետաքրքրական է հանրապետության բընակչության ազգային կազմը. հիսուն տոկոսից ավելին ռուսներ են, 36,8-ը՝ յակուտներ, 1,4-ը՝ էվենկներ, իսկ 11,3 տոկոսը էվեններ են, յուկագիրներ, չուկչիներ, այլ ազգությունների ներկայացուցիչներ:

Եթե 1939 թվականի տվյալներով գյուղատնտեսության մեջ զբաղված էր բնակչության 73 և արդյունաբերության մեջ՝ 27 տոկոսը, ապա այժմ պատկերը լրիվ փոխվել է. արդյունաբերության բուռն զարգացում, և ներկայումս այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմում են 37 և 63 տոկոս: Դա և՜ բնական է, և՜ օրինաչափ:

Յակուտիայում է գտնվում մեր երկրի «ցըրտի բևեռ» Վերխոյանսկը, որտեղ ձմռանը սնդիկի սյունն իջնում է մինչև 70 աստիճան:

Այս զարմանալի երկրի ընդերքն իսկական գանձարան է. առկա են Մենդելեևի պարբերական աղյուսակի համարյա բոլոր տարրերը: Համաշխարհային հռչակ են նվաճել ոսկու, ալմաստների, բնական գազի, երկաթի, ապատիտների հարուստ հանքավայրերը: Չարո-Տոկինյան երկաթահանքի շրջանում հանքային հումքի պաշարները կազմում են 5 միլիարդ տոննա: Հապա քարածո՜ւխը: Այս վառելիքի պաշարներով Յակուտիան ամենահեռանկարային շրջանն է Արևելյան Սիբիրում և Հեռավոր Արևելքում: Տասներորդ հնգամյակի ծըննդն է այստեղ կազմավորվող՝ ԲԱՄ-ի շըրջանում առաջին հզոր տերիտորիալ-արտադրական կոմպլեքսը, որի հիմնական օբյեկտները շարք են մտնելու ընթացիկ հնգամյակում:

Ինքնավար հանրապետության համար պատմական իրադարձություն էր երկաթուղու շինարարության ավարտումը ԲԱՄ—Տինդա—Բերկակիտ հատվածում: ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր է դրել այն շարունակել դեպի հյուսիս՝ Տոմոտ և Յակուտսկ՝ երկրի ժողովրդական տնտեսության մեջ ընդգրկելով վիթխարի բնական հարստությունները:

Կոմպլեքսի կազմավորումով բարենպաստ նախադրյալներ կստեղծվեն ՍՍՀՄ արևելքում սև մետալուրգիայի խոշոր բազայի ստեղծման համար: Դրան են նպատակամղված էներգետիկայի արագ տեմպերը: Հետպատերազմյան տարիներին այստեղ էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացել է 180 ան-

գամ: Առաջիկա տարիներին այդ տեմպերն ավելի արագ կաճեն:

Երկրի հսկա տարածքի վրա գյուղատնտեսությամբ զբաղվում են ընդամենը 90 սովխոզ: Կենտրոնացումը հնարավորություն է ընձեռել լայնորեն օգտագործելու մեքենայացումը, արտադրության որոշ ճյուղեր փոխադրելու արդյունաբերական հիմքի վրա: Լենայի միջին հոսանքներում առատ բանջարեղեն է աճում. շատ տեղերում հեկտարից ստանում են 200—250 ցենտներ կարտոֆիլի և 400—600 ցենտներ կաղամբի բերք: Լայն ծավալ է ընտանում բանջարեղենի աճեցումը ջերմատներում: Գյուղատնտեսության հիմնական ճյուղը անասնաբուծությունն է, որի մեջ մտնում են մսատու և մսակաթնատու տավարաբուծությունը, մսաթաբունային ձիաբուծությունը, եղջերվաբուծությունը և մորթատու գազանաբուծությունը: Վերջին տարիներին դրանց ավելացել են թռչնաբուծությունն ու խոզաբուծությունը: Հանրապետությունը շարունակում է մնալ Միության որսորդական արդյունահանության խոշոր շրջանը: Յակուտիայում ճանաչված, համբավ վաստակած անձնավորություն է սոցիալիստական աշխատանքի հերոս, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, ՍՍՀՄ 50-ամյակի անվան սովխոզի որսորդ Ի. Վոլկովը:

ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում ծաղկում են յակուտական գրականությունը, արվեստն ու մշակույթը: Խոմուսից մինչև սիմֆոնիկ նվագախումբ, խորեոգրաֆիա և օպերա, բանավոր զրույցներից մինչև դրամատիկ թատրոն, սովորական զարդաքանդակից մինչև պատկերասրահ և կիրառական արվեստների թանգարաններ:

Ընդունված կարգ է, քաղաքների մասին դատողություններ ամենից շատ անում են ըստ բնակչության թվի: Բացառություն չի կազմում նաև Յակուտսկը, որ հիմնադրման տարում՝ 1632 թվականին, ունեցել է 200 բնակիչ: Ընթացիկ հնգամյակի վերջում քաղաքը կհատի 200 հազարի բնագիծը:

Ինքնավար հանրապետության մայրաքաղաքը, որտեղ մինչև հեղափոխությունը հազվագյուտ են եղել գրագետ մարդիկ, հիմա մեր երկրի Հյուսիս-Արևելքի գիտական կենտրոնն է: Այստեղ կան գիտահետազոտական 19 հիմնարկություններ, այդ թվում՝ ՍՍՀՄ ԳԱ Սիբիրի բաժանմունքի Յակուտական մասնաճյուղի 6 ինստիտուտ: «Սիբիր» և «ԲԱՄ» կոմպլեքսային ծրագրերի շրջանակներում հանրապետության գիտնականները ռեգիոնալ խնդիրներ են մշակում Հարավյակուտական տերիտորիալ-արտադրական կոմպլեքսի, ալմաստների, գազի ու նավթի գծով, որոնցով այնքան հարուստ է Յակուտիայի ընդերքը:

Արդի փուլում անհամեմատ մեծացել է գիտական կոլեկտիվների դերը Սիբիրի արտադրաուժերի զարգացման հետ կապված խնդիրների լուծման և հանձնարարականների պատրաստման, նոր, հատկապես ԲԱՄ-ին հարող շրջաններում, տերիտորիալ-արտադրական կոմպլեքսների կազմավորման ուղիների մշակման, Յակուտիայի հանքահումքային և վառելիքաէներգետիկ բազայի հետագա զարգացման նպատակով ծավալվող հետազոտություններում, բնական ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման և շրջակա միջավայրի պահպանության ռացիոնալ ուղիների որոնման գործում:

Հիմնարար հետազոտությունների ծավալման ու խորացման հետ մեկտեղ գիտնականները զբաղվում են մշակումների արդյունքների լայն ներդրմամբ: Նման աշխատանքներից մի քանիսի ներդրման տնտեսական արդյունքը միլիոնավոր ռուբլիների է հասնում: Սառածաբանության, տիեզերաֆիզիկայի, մետաղների ցրտադիմացկունության և այլ բնագավառներում կատարվող շատ հետազոտություններ քաջ հայտնի են ո՛չ միայն մեր երկրում, այլև նրա սահմաններից դուրս:

Ներյունգրի մեկնելուց առաջ պատահեց այնպես, որ ամբողջ մեկ օր ստիպված եղանք հետաձգել թռիչքը: Առավոտից անձրև էր մաղում և նախորդ օրվա 30 աստիճան տաքությունը մեկեն իջավ 14-ի: Յակուտսկը պատվեց թանձր մառախուղով: Բայց միջոցառման կազմակերպիչները պարապ չնստեցին: Իսկույն զանգահարեցին սառածաբանության ինստիտուտ, և մեզ ընդունեց նրա դիրեկտոր, ակադեմիկոս Պավել Իվանովիչ Մելնիկովը՝ գիտության մի պատկառելի այր և չափազանց հաճելի զրուցակից, որի խոսքն առաջին իսկ րոպեից պաշարեց մեր միտքն ու ուշադրությունը: Նա հիմնականում խոսեց պրոբլեմների և ջերմաստիճանային փոփոխությունների վերաբերյալ կանխատեսություններ անելու նպատակով կատարվող հետազոտությունների մասին:

Այլ բան է, երբ լսում կամ կարդում ես հավերժական սառածության մասին և մի այլ բան, երբ աչքովդ ես տեսնում դա և ձեռքով շոշափում: Եվ ահա մասնագետի ուղեկցությամբ հենց ինստիտուտի մասնաշենքից աստիճաններով իջնում ենք հավերժական սառած գրունտների ֆիզիկայի ու մեխանիկայի լաբորատորիան, մի հազվագյուտ բնական թունելախորշ, որտեղ հերթական գիտափորձերի են սպասում գերճշգրիտ սարքերը: Ո՛չ հենասյուներ, ո՛չ բետոնե պատեր: Ամեն ինչ բնական վիճակում է: Արդեն 1,5 մետրից ընկըսվում է սառուցյալ թագավորությունը: Ձյունով ու սառույցով են պատված բնավազի կտրվածքի ցեմենտացած շերտերը, ավազահատիկները դարերով այդպես պսպղում են ձյունափաթիլների տեսքով: Մինուս 3,5 աստիճանն այստեղ կայուն ցուցանիշ է, պահպանվում է և՛ ամռանը, երբ դրսում 30—35 աստիճան է, և՛ ձմռանը, երբ սնդիկի սյունն իջնում է մինուս 65 և ավելի ցածր: Եվ դա, գետնի մակերևույթից հաշված, սկսած 1,5 մետրից մինչև 250 մետրի նիշը:

Ցուրտ է, մի պահ ցնցվում ես, բարձրացնում պիջակիդ օձիքը և շնորհակալությամբ հրաժեշտ տալիս աշխարհի չգիտես որերորդ հրաշալիքին...

## ՈՂՋՈ՛ՒՅՆ, ՆԵՐՅՈՒՆԳՐԻ

ՅԱԿ—40-ը Յակուտսկից հարավ-արևելք՝ մինչև Չուլման, թռչում է երկու և կես ժամում, հետո ավտոբուսով, աշխարհի ամենաերկար ճանապարհով, գնում-գնում ենք ու հասնում մեր երկրի ամենաերիտասարդ քաղաքն ու Հարավ-յակուտական տերիտորիալ-արտադրական կոմպլեքսի հռչակված կենտրոնը՝ Ներյունգրի: Մեծ պաստառի վրա ընկեր Լ. Ի. Բրեժնևի խոսքերն են. «Նոր ռեգիոնների արդյունաբերական յուրացումը կարևոր է թե՛ սոցիալական և թե քաղաքական առումով: Այնտեղ ստեղծվող արտադրական կոլեկտիվները իրենց հետ բերում են աշխատանքի ու կենցաղի բարձր կուլտուրա, կյանքի նոր, ժամանակակից ռիթմ: Սովետական մարդկանց հերոսական մեծագործությունների տարեգրության մեջ գրվում է մի փայլուն գլուխ ևս»:

Շինարարի առաջին ժամանակավոր վրանը այստեղ՝ հավերժական սառածության և բարձր սեյսմիկության գոտում, տեղադրվել է տակավին 1975-ի սկզբներին, այսինքն՝ քաղաքը տասը տարեկան էլ չկա, բայց արդեն ստանում է իր դեմքն ու դիմագիծը: Քաղաքի նախագծմանը մասնակցում են երկրի ավելի քան 40 տարբեր ինստիտուտներ: Միության 73 քաղաքների 92 գործարաններ մեքենաներ ու սարքավորումներ են առաքում ածխային կոմպլեքսին՝ ԲԱՄ-ի ինդուստրիալ գոտու առաջնեկին: Այստեղ աշխատում են ՍՍՀՄ 77 ազգությունների ներկայացուցիչներ: Նրանց բարձրարդյունավետ, ոգեշունչ աշխատանքով է ժամկետից մեկ ու կես տարի շուտ շահագործման հանձնվել Տրանսսիբիրյան մայրուղուց սկիզբ առնող Տինդա—Բերկակիտ երկաթուղագիծը, արդյունահանվել-բարձվել նախատեսվածից զգալիորեն շատ բարձրորակ էներգետիկ քարածուխ, գործարկվել խոշորաբլոկ տնաշինության հզոր կոմբինատը: Խնդիր է դրված մինչև հնգամյակի վերջն ավարտել ածխահատվածքի, տարեկան 9 միլիոն տոննա ածխային կոնցենտրատ հզորությամբ հարստացուցիչ ֆաբրիկայի և Ներյունգրիի ՊՇԷԿ-ի առաջին հերթի շինարարությունը: Աշխատանքների վիթխարի մասշտաբների մասին պատկերացում կազմելու համար նշենք, որ դրանցից միայն մեկի՝ հարստացուցիչ ֆաբրիկայի շինարարությունում ընդհանուր առմամբ կօգտագործվի 55 հազար տոննա մետաղական կոնստրուկցիա, կտեղադրվեն 12 հազար տոննա ոչ ստանդարտ և 22 հազար տոննա տեխնոլոգիական սարքավորումներ:

Որքան արագանում են Հարավ-յակուտական ածխային կոմպլեքսի շինարարության տեմպերը, այնքան ավելանում է ուշադրությունը կարևորագույն օբյեկտի՝ «Ներյունգրինյան» ածխահատվածքի նկատմամբ: Շատ ժամանակ չի անցել այն հիշարժան օրվանից, երբ փոքր ԲԱՄ-ով այստեղից անցավ վառելիքով բարձված առաջին գնացքը և արդեն 5 միլիոն տոննա գերազանց քարածուխ է ստացել երկիրը Հարավային Յակուտիայից:

Բայց հիմնական ուշադրությունը նվիրվում է վաղվա քարածխին, որը հումք կհանդիսանա կոքսի համար: Դրան հասնելը, սակայն, հեշտ գործ չէ. հարկավոր է ապարազերծել 300 մետր հաստությամբ շերտը:

Ինչպես յուրաքանչյուր նորակառույց, Ներյունգրին ևս իր պրոբլեմներն ունի, որոնցից հիմնականը նոր տեխնիկայի ներդրումն է, հատկապես էքսկավատորների: «Ուրալմաշում» ծնվել է նոր հսկա՝ «ԷԿԳ—20»: Լուրջ խնդիր է, սակայն, դրա նախագծային կարողության ապահովումը: Դրանք արտասահմանյան մեքենաներին զուգահեռ այժմ գործում-փորձարկվում են ածխահատվածքում:

Փորձարկման ընթացքում նկատվում են և առանձին թերություններ. ածխահատվածքում բանող արտասահմանյան գերհզոր «Լեկտրահաուլ» ինքնաթափ մեքենաների ու «Մարիոն» էքսկավատորների գործարկման ընթացքում. ամերիկյան ու ճապոնական մեքենաշինական արդյունաբերության առաջնեկները հանդիսանալով, առաջին անգամ դրանք փորձարկվում են այս եզակի կառույցում:

Ածխահանվածքը նայացքիդ դեմ փռված վիթխարի ձեռակերտ փոսորակ է, ուր օրնիբուն չեն ընդհատվում մեխանիզմների դղիրդն ու տեղաշարժերը: «Մարիոն» մեքենաներից մեկը՝ № 8-ը, ղեկավարում է փառաբանված Ֆյոդոր Զոլոտոն՝ լեռնատրանսպորտային նորաստեղծ կոմպլեքսի ղեկավարը: Ժուռնալիստներով շրջապատում ենք նրա հսկա ու շարժուն մեքենան, որի շերեփի տարողությունը 20 խորանարդ մետր է: Մի քանի լիցք, և «Լեկտրա-հաուլը» 180 տոննա ապարի բեռան տակ փնչալով պոկվում է տեղից: Երեք մետր է այս հսկայի դողանիվների շառավիղը:

Հետո Զոլոտոն, ասես տիեզերանավից, խցիկից իջնում է և ժպտալով մոտենում մեզ:

— Օ՜, ժուռնալիստնե՞ր եք,— ուրախանում է Ֆյոդոր Պանտելեևիչը,— ուրեմն հույս կա, որ մեր աշխատանքները գնալով ավելի կլավանան: Քանի՜-քանի՜ անգամ ես դա անձամբ զգացել եմ նման հանդիպումներից հետո:

Աշխույժ զրույցի ենք բռնվում և պարզվում է, որ նա ահա տասը տարի էքսկավատորավար է աշխատում: Դոնբասում ու Կուզբասում ինչ տեսակի մեքենա ասես, որ չի վարել: Իսկ ահա 1979-ից այստեղ է՝ «Մարիոնի» վրա: 16 ինքնաթափ մեքենաները հազիվ են սպասարկում նրա և Կարիմժան Բեկեշևի էքսկավատորներին: Կիսամյակում նրանք ապարաբարձման գծով ռեկորդ են սահմանել՝ 3 միլիոն 300 հազար խորանարդ մետր:

— Երկրորդ կիսամյակում ձգտում ենք նվաճել 5 միլիոնի բնագիծը,— հրաժեշտի ժամանակ վստահ ասում է Զոլոտոն, և ես մտածում եմ՝ խոփը գլորվել պուտուկը գտել է. որքա՜ն շատ է սազում նրան այդ ոսկի ազգանունը:

Հետո դիմում է «Պրավդայի» հատուկ թղթակից Գ. Յաստրեբցովին.

— Գիտե՞ք ինչ եմ ուզում,— ասում է,— մեր մի առաջարկի լուծումը ձգձգվում է: Կոմպլեքսն ավելի արդյունավետ կաշխատի, եթե նրա կազմում մտցվեն ևս երկու հոգի՝ հորատման մուրճերով: Դա շատ կօգնի գործի արագացմանը:

Յաստրեբցովը խոստանում է զբաղվել այդ հարցով հենց Ներյունգրիում՝ թռուցկաժողովի ժամանակ:

## ԳՈՐԾԱՐԱՐ, ՍՐՏԱԲԱՑ ԶՐՈՒՅՑ

Մեզ արդեն ընդունել էր ՍՄԿԿ մարզկոմի քարտուղար Վ. Ֆյոդորովը, թռուցկաժողովում էլ աշխատանքները ղեկավարում. էր ՍՄԿԿ Ներյունգրիի քաղկոմի առաջին քարտուղար Ի. Պյանկովը: Դա ավելի շուտ ոչ թե սովորական թռուցկաժողով էր, այլ գործարար, սրտաբաց զրույց կոմպլեքսի ստորաբաժանումների, միութենական մի շարք մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարների և ժուռնալիստների միջև: Կազմակերպվել էր ՍՄԿԿ Յակուտիայի մարզկոմի և ՍՍՀՄ ժուռնալիստների միության վարչության նախաձեռնությամբ: Հույժ ներկայացուցչական բնույթ էր կրում: Մասնակցում էին ՍՄԿԿ Յակուտիայի մարզկոմի և Ներյունգրիի քաղկոմի ղեկավար աշխատողներ, կենտրոնական, հանրապետական, քաղաքային, ճյուղային լրագրերի, ռադիոյի և հեռուստատեսության թղթակիցներ: Թռուցկաժողովին մասնակցում էին և պարզաբանումներով ու հարցադրումներով հանդես եկան ՍՍՀՄ ածխարդյունաբերության մինիստրի տեղակալ Ա. Պշենիչնին, ՍՍՀՄ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի մինիստրության պատասխանատու աշխատող Ա. Ծաչկովը, ՍՍՀՄ մոնտաժային և հատուկ աշխատանքների մինիստրության գլխավոր վարչության պետի տեղակալ Վ. Ստորոժենկոն, ՍՍՀՄ պետմատի վարչության պետի տեղակալ Գ. Բաղդասարովը, ՌՍՖՍՀ պետշինի նախագահի տեղակալ, ԲԱՄ-ի գլխավոր ճարտարապետ Ն. Սուխանովը, ՌՍՖՍՀ առևտրի մինիստրի տեղակալ Ն. Կոնովալովը, «Յակուտուգոլ» միավորման գլխավոր դիրեկտոր Վ. Ժդամիրովը, Ներյունգրիի ՊԾԷԿ-ի շինարարության վարչության պետ Վ. Կամենը և ուրիշներ:

Երկու օր շարունակ թռուցկաժողովի մասնակիցները քննարկում էին այն խնդիրները, որոնց լուծմամբ է մեծ չափով պայմանավորված կոմպլեքսի արագ ձևավորումը, վերլուծում էին մատակարարումների ոչ կանոնավոր իրագործման առանձին փաստերի պատճառները, փոխադարձ պահանջներ էին ներկայացնում միմյանց, մտմտում կուտակված դրական փորձի տարածման նոր ձևերի ու մեթոդների մասին, ընդգծում այն օգնության ու աջակցության դերը, որ կառույցներին ցույց են տալիս մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցները:

Հանդիպման մասնակիցները, նշելով այն հերոսական աշխատանքը, որը կատարվում է տերիտորիալ-արտադրական կոմպլեքսում, միաժամանակ անդրադարձան այն պրոբլեմներին, որոնք հիմնականում պայմանագրային պարտականությունների թերակատարման, փոխադարձ պարտավորություններ ունեցող կազմակերպությունների ջանքերի անբավարար և ոչ ճշգրիտ կոորդինացման հետևանք են:

Ի դեպ, ընդհանուր առմամբ դրական բնութագրելով մեր հանրապետության՝ Յակուտմատին առաքող ձեռնարկությունների գործունեությունը, թռուցկաժողովում, ինչպես արդեն նշել ենք մեր մի այլ հոդվածում, դժգոհության նոտա հնչեց «Հայքիմմեքենա» արտադրամիավորման հասցեին, որը Հարավային Յակուտիա է ուղարկում ցածրորակ կոնսոլային պոմպեր: Միավորման ղեկավարությունն այդ քննադատությունից պետք է անհրաժեշտ հետևություններ անի, ապահովի հնգամյակի կարևորագույն կառույցներին առաքվող և ընդհանրապես թողարկվող արտադրանքի բարձր որակը: Դա մեր պարտքն ու պարտականությունն է հեռավոր տայգայում հազար ու մի դժվարություններ հաղթահարող հերոս մարդկանց նկատմամբ:

...Իրիկնադեմին, մեր ժամանակով՝ կեսգիշերին, երբ անցնում էի կառուցվող ունիվերսամատիպ շենքի կողքով, ծանոթ մեղեդի լսեցի: Իմ լավ բարեկամ Արամայիս Սահակյանի խոսքերով գրված երգն էին կատարում՝ «Երևան, Երևան...»: Մոտեցա, խոսեցինք, ծանոթացանք: Ախալցխացի հայեր էին, իսկ մեկն էլ՝ Հակոբը, Մեծամորից էր: Շենքի ներքին հարդարման աշխատանքներն էին կատարում բրիգադային կապալի սկզբունքով և օրական 150 տոկոս պլան էին ապահովում: Շատ ուրախացան, երբ իմացան հայ եմ: Եվ ինձ հրավիրեցին իրենց ոչ այնքան հարմարավետ բնակարանը, հյուրասիրեցին եղջերվի խաշլամայով և գուդա պանրով, որ հետները էին բերել: Գոհ էին և՛ իրենց վիճակից, և՛ վարձատրությունից: Կլիմային այնպես էին վարժվել, ինչպես բնիկներ:

Հաջորդ օրը, Սերեբրյանի Բորում, մի ուրիշ հայի հանդիպեցի: Միջահասակ մարդ էր Կարո Պետրոսյանը: Արդեն մի քանի տարի ընտանիքով այստեղ էր բնակվում և աշխատում էր «Հիդրոսպեցստրոյում», կառուցում էր Ներյունգրիի ՊԾԷԿ-ը: Նա շատ էր ուզում մեր ողջ խմբին տանել իր տուն՝ հյուրասիրելու: Հազիվ կարողացանք ազատել նրան այդ «ծանր» պարտականությունից, պատճառաբանելով, որ այդ պահին անհետաձգելի գործ ունենք:

Յակուտիայում, մանավանդ կոմպլեքսի շրջանում, ամեն քայլափոխի կարելի է հանդիպել մեր հայրենիքի տարբեր ազգերի ու ազգությունների ներկայացուցիչների, որոնք տանտիրոջ իրավունքով ձեռնամուխ են եղել պատմական մեծ վերափոխումների իրականացմանը: Ե՛վ նրանց, և՛ այդ հայրենասիրական վեհ առաքելությանը հեռվից հեռու մասնակցողներին միևնույն խոհերն ու զգացմունքներն են համակել՝ «Կառուցման ու արարումի այս հաղթարշավում եղբայրներդ ու քույրերդ քեզ հետ են. տո՛ւր ձեռքդ, Յակո՛ւտիա»:

Եղբայրության այդ բարետենչ ձեռքպարզումը մեծ ու խորին խորհուրդ ունի, որ ահա 60 տարի իրեն է գամել համայն աշխարհի ուշադրությունը:

**ԷԴՎԱՐԴ ՇԱՀԻՐՅԱՆ**

*Յակուտսկ—Ներյունգրի—Երևան*

# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ս. Ս. ԱԼԵՔՍԱՆԴՐՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական
աշխատանքի բաժնի վարիչի առաջին տեղակալ

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, կարևորելով սկզբնական կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ դերը կոմունիստական շինարարության մեծ ու բազմազան խնդիրների լուծման գործում, պահանջեց, որ նրանք լիովին ու ավելի լավ օգտագործեն ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքը: Իրենց այդ դերը հստակորեն կատարելու նպատակով սկզբնական կուսկազմակերպություններին վերապահվում է ստեղծելու ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովներ և օգտագործել նրանց ուժերը՝ ընդունած որոշումները հաջողությամբ կենսագործելու համար:

Վերահսկողության գործի նկատմամբ կուսակցության ցուցաբերած անդուլ հոգատարության մասին է վկայում այն փաստը, որ ՍՄԿԿ Կենտկոմը վերահսկողության և կատարման ստուգման հետագա կատարելագործման մասին որոշմամբ խնդիր էր դրել փոփոխություններ մտցնել ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովների գործող կանոնադրության մեջ, իսկ հետագայում ընդունեց «Ադմինիստրացիայի գործունեության և ապարատի աշխատանքի նկատմամբ վերահսկողություն իրականացնող սկզբնական կուսակցական կազմակերպությունների հանձնաժողովների մասին» որոշումը և հաստատեց այդ հանձնաժողովների մասին կանոնադրությունը:

Կանոնադրությանը համապատասխան, ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովներ են ստեղծվում արդյունաբերության, տրանսպորտի, կապի, շինարարության, նյութատեխնիկական մատակարարման, առևտրի, հասարակական սննդի, կոմունալ-կենցաղային սպասարկման, կոլտնտեսությունների, սովխոզների և գյուղատնտեսական այլ ձեռնարկությունների, նախագծային ինստիտուտների, կոնստրուկտորական բյուրոների, ուսումնական հաստատությունների, նախագծակոնստրուկտորական, կուլտուր-լուսավորական և բուժական հիմնարկությունների կուսկազմակերպություններում: Իսկ մինիստրությունների, պետական կոմիտեների և մյուս կենտրոնական ու տեղական սովետական, տնտեսական հիմնարկությունների և գերատեսչությունների կուսկազմակերպություններում ստեղծվում են ապարատի աշխատանքը վերահսկող հանձնաժողովներ, որոնք հետևում են կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարմանն ու սովետական օրենքների պահպանմանը: Նոր կանոնադրության մեջ ճշգրտվել են նաև հանձնաժողովների խնդիրները, իրավունքներն ու պարտականությունները, ցույց են տրվել նրանց աշխատանքի հետագա ակտիվացման կոնկրետ ուղիները:



Ինչպես նշված է կանոնադրության մեջ, սկզբնական կուսկազմակերպությունները, ելնելով տեղական կոնկրետ պայմաններից և առաջադրված խնդիրների կարևորությունից, իրենք են որոշում, թե որտեղ և ինչպիսի հանձնաժողովներ ստեղծել: Այլ խոսքով, նրանց հնարավորություն է ընձեռվում հանձնաժողովների կազմակերպմանը մոտենալ գործի շահերից ելնելով: Հանձնաժողովներն ստեղծվում են կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում, կուսկոմիտեի և կուսբյուրոյի նիստերում: Ընդ որում դրանք ստեղծվում են ադմինիստրացիայի գործունեության և ապարատի աշխատանքի ամենակարևոր տեղամասերում գործերի վիճակի նկատմամբ մշտական և հետևողական վերահսկողություն իրականացնելու նպատակով: Որպես կանոն, նման մի քանի հանձնաժողովներ են ստեղծվում խոշոր կուսկազմակերպություններում: Դրանք օգնում են կուսկոմիտեներին՝ լիովին օգտագործելու վերահսկողության բոլոր ձևերը: Համեմատաբար փոքր կուսկազմակերպություններում հաճախ ստեղծվում է մեկ հանձնաժողով՝ ադմինիստրացիայի գործունեության առավել կարևոր բնագավառի նկատմամբ մշտական վերահսկողություն իրականացնելու համար:

Ղեկավարվելով կուսակցության հիմնադրույթներով ու պահանջներով՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, քաղկոմ-շրջկոմները ձգտում են, որպեսզի սկզբնական կուսկազմակերպությունները լիովին ու հետևողականորեն իրականացնեն վերահսկողության իրենց իրավունքը, կատարելագործեն դրանց ձևերն ու մեթոդները: Այդ հարցի կապակցությամբ ՀԿԿ Կենտկոմը 1982 թվականի մարտի 16-ին ընդունեց համապատասխան որոշում: Կուսակցության քաղկոմներին և շրջկոմներին հանձնարարվեց սիստեմատիկ կերպով ուղղություն տալ սկզբնական կազմակերպություններին, ըստ ամենայնի ծավալել հանձնաժողովների գործունեությունը, խորապես ուսումնասիրել և տարածել նրանց աշխատանքի դրական փորձը: Կենտկոմին առընթեր կուսակցական և սովետական աշխատողների որակավորման բարձրացման հանրապետական դասընթացներում պլանավորված է պարապմունքներ անցկացնել վերահսկողության ֆունկցիաների իրականացման ասպարեզում սկզբնական կուսկազմակերպությունների խնդիրների վերաբերյալ: ՀԿԿ Կենտկոմի հանձնարարությամբ Հայկական ՍՍՀ հրատպետկոմը առանձին գրքույկով, հայերեն հրատարակել է հանձնաժողովների մասին կանոնադրությունը:

Ներկայումս հանրապետությունում գործում է ադմինիստրացիայի գործունեությունը և ապարատի աշխատանքը վերահսկող 6.088 հանձնաժողով, այդ թվում արդյունաբերական ձեռնարկություններում՝ 1.512, տրանսպորտի և կապի ձեռնարկություններում՝ 356, շինարարության մեջ՝ 505, առևտրի և հասարակական սննդի ձեռնարկություններում՝ 236, ուսումնական հաստատություններում՝ 765, սովխոզներում և կոլտնտեսություններում՝ 1.346 և այլն: Կուսակցական կոլեկտիվի այս կամ այն կոնկրետ հանձնարարությունը հաջողությամբ և օպերատիվ կերպով կատարելու համար սակավաթիվ կոմունիստներ ունեցող կուսկազմակերպություններում գործում են ավելի քան 100 ժամանակավոր հանձնաժողովներ:

Հանձնաժողովների օգնությամբ սկզբնական կուսկազմակերպություններն ապահովում են կուսակցության և կառավարության դիրեկտիվների, իրենց սեփական որոշումների կոնկրետ կատարումը: Հանձնաժողովները կուսկոմիտեներին, կուսբյուրոներին օգնում են՝ օպերատիվ կերպով բացահայտելու և վերացնելու թերությունները: Կոմունիստների մասնակցությունը հանձնաժողովների աշխատանքին զարգացնում է նրանց նախաձեռնությունը և սկզբունքայնությունը, նպաստում ճիշտ դաստիարակելու կադրերին:

Հանրապետության կուսկազմակերպությունների հանձնաժողովների աշխատանքում այսօր գլխավորը նախ և առաջ, գիտատեխնիկական առաջընթացի արագացման և աշխատանքի արտադրողականության աճի, արտադրանքի թողարկման ավելացման և որակի բարձրացման, տնտեսական ղեկավարման ոճի ու մեթոդների բարելավման հարցերն են: Անհրաժեշտ է մշտական ուշադրության տեսադաշտում պահել հումքի, նյութերի, վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողաբար ծախսման գործը: Կուսակցական վերահսկողու-

թյան սուր ծայրը պետք է ուղղել բյուրոկրատիզմի, քաշքշուկի, պաշտոնական
պարտականությունների կատարման նկատմամբ անբարեխիղճ վերաբերմունքի
ամեն մի դրսևորման դեմ: Հանձնաժողովների պարտքն է ժամանակին նկա-
տել և պաշտպանել ամեն մի նորն ու առաջադիմականը, խորամուխ լինել
կադրերի տեղաբաշխման և դաստիարակության, աշխատանքի պայմանների և
մարդկանց կենցաղի բարելավման խնդիրների մեջ, հետևել պետական, պլա-
նային և տեխնոլոգիական կարգապահության խստիվ կիրառմանը:
Որպես կանոն, կուսակցական վերահսկողության ներքո պետք է գտնվեն
ադմինիստրացիայի գործունեության, ապարատի աշխատանքի գլխավոր, հան-
գուցային հարցերը՝ հաշվի առնելով կուսկազմակերպությունների աշխատանքի
բնույթը, պայմանները և առանձնահատկությունները: Կուսկազմակերպու-
թյունների առանձնահատկություններով էլ որոշվում են նաև վերահսկողու-
թյան ձևերն ու մեթոդները: Հանրապետության սկզբնական շատ կուսկազմա-
կերպությունների պրակտիկան ցույց է տալիս, որ վերահսկողության առա-
վել գործնական ձևերն են՝ կուսբյուրոյի, կուսկոմիտեի նիստերում և կուս-
ժողովներում կոլեկտիվի աշխատանքի կարևոր պրոբլեմների քննարկու-
մը, տնտեսական ղեկավարների և հենց իր՝ կուսկազմակերպության, կոմու-
նիստների կազմակերպչական և գաղափարաքաղաքական գործունեության հըս-
տակ ծրագրի մշակումը, ինչպես նաև տնտեսական ղեկավարների հաշվետվու-
թյունների կանոնավոր ունկնդրումը՝ նրանց գործունեության այս կամ այն
կարևոր բնագավառի վերաբերյալ:
ՀԿԿ Երևանի Լենինյան շրջկոմը հետևողականորեն զբաղվում է վերահըս-
կողություն իրականացնող հանձնաժողովների գործունեության բարելավման
ու ակտիվացման հարցերով: Շրջկոմը կուսակցական ակտիվին ուսուցանում է
վերահսկողության աշխատանքի ձևերն ու մեթոդները: Այստեղ սկզբնական
կուսակցական կազմակերպությունների քարտուղարների հետ կանոնավոր կեր-
պով անցկացվում են սեմինար խորհրդակցություններ՝ ադմինիստրացիայի
գործունեության նկատմամբ իրականացվող վերահսկողությունը կատարելա-
գործելու վերաբերյալ: Այդ հարցերը դարձել են բյուրոյի նիստերի սիստեմա-
տիկ քննարկման առարկա: Եվ կոնկրետ արդյունքներն առկա են: «Նաիրիտ»
գիտաարտադրական միավորման, կոշիկի «Մասիս» արտադրամիավորման և
ուրիշ կուսկոմիտեների ուշադրության կենտրոնում մշտապես գտնվում են թո-
ղարկվող արտադրանքի որակի հարցերը: Այդ նպատակով նշված կազմակեր-
պություններում վերահսկողությունը իրականացնող հանձնաժողովների ուժե-
րով անցկացվել են արտադրանքի որակի կոմպլեքսային ստուգումներ՝ միջ-
օպերացիոն տեխնոլոգիական պրոցեսներում միջոցառումներ են մշակվել հաղ-
թահարելու բոլոր այն թերությունները, որոնք բացասաբար են ազդում թո-
ղարկվող արտադրատեսակների որակի վրա: Ձեռնարկված միջոցները նպաս-
տել են բարձրագույն կատեգորիայի արտադրանքի տեսակարար կշռի մեծաց-
մանը: «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում, օրինակ, որականիշով
արտադրանքի թողարկումը ներկայումս անցնում է 70 տոկոսից:
Վերահսկողության ներգործունությունը, նրա հրապարակայնությունը,
ադմինիստրացիայի գործունեության բոլոր կողմերի ընդգրկումը գտնվում են
հասարակական կազմակերպությունների հետ կուսակցական կազմակերպու-
թյան կապերի ուղղակի առնչության մեջ: Ահա թե ինչու, այն դեպքերում, երբ
դա նպատակահարմար է, կուսակցական կազմակերպությունները հանձնաժո-
ղովների գործունեությունը կոորդինացնում են ժողովրդական վերահսկողու-
թյան կետերի և խմբերի, «կոմերիտական լուսարձակ» շտաբների, մշտապես
գործող արտադրական խորհրդակցությունների աշխատանքի հետ: Դրանով
լուծվում է նաև մեկ ուրիշ շատ կարևոր խնդիր՝ ապահովվում է կոմունիստ-
ների, կոմերիտականների և անկուսակցական աշխատավորների լայն զանգ-
վածների ակտիվ մասնակցությունը արտադրության անմիջական կառավար-
մանը, նախաձեռնության և ստեղծագործության զարգացման լայն ասպարեզ
է բացվում ինչպես ղեկավարների, այնպես էլ շարքային աշխատողների հա-
մար, բարձրանում է պլանների և առաջադրանքների կատարման համար կո-
լեկտիվների և նրա յուրաքանչյուր անդամի պատասխանատվությունը, ամրա-



պնդվում է կարգապահությունը և, ի վերջո, բարելավվում է կոլեկտիվի բա-
րոյահոգեբանական մթնոլորտը:
Երկար տարիներ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման աշխա-
տանքի նեղ տեղերից մեկը համարվում էին վագոնների գերնորմատիվ պա-
րապուրդները: Ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ կուսկոմիտեին
առընթեր վերահսկողության հանձնաժողովը միավորման ժողովրդական վե-
րահսկողության կոմիտեի հետ մեկտեղ ուսումնասիրեց պարապուրդների
պատճառները, արդյունքները քննարկվեցին կուսկոմիտեի նիստում: Հանձնա-
ժողովի ստուգումների արդյունքներով, եզրակացություններով ու առաջարկու-
թյուններով կազմվեց տրանսպորտի արտադրամասի աշխատանքի բարելավման
միջոցառումների պլան, արագացվեց երկաթուղային ուղիների նորոգումը,
կարգի բերվեցին այդ ուղիների անցումները, ընդլայնվեցին պահեստային շեն-
քերը, բեռնման-բեռնաթափման գործը կազմակերպվեց նաև գիշերը և հան-
գստյան օրերին: Ձեռնարկված միջոցների շնորհիվ վագոնների պարապուրդ-
ները նվազեցին ավելի քան 30 տոկոսով:
Հանձնաժողովների լավ աշխատանքի օրինակներ կարելի է բերել առանց
բացառության բոլոր քաղաքների ու շրջանների կուսակցական կազմակերպու-
թյուններից: Սակայն այստեղ անհրաժեշտ է նշել, որ հանձնաժողովները չեն
կարող ստանձնել կուսակցական կազմակերպությունների՝ ադմինիստրացիայի
գործունեությունը կամ ապարատի աշխատանքը վերահսկելու հիմնական
ֆունկցիաները: Նրանք միայն օգնում են սկզբնական կազմակերպություննե-
րին՝ արդյունավետորեն իրականացնելու ՍՄԿԿ կանոնադրությամբ նախատես-
ված այդ ֆունկցիաները: Ընդ որում կուսկազմակերպությունները հանձնաժո-
ղովների նյութերի հիման վրա պետք է ոչ միայն արձանագրեն հայտնաբեր-
ված վրիպումներն ու թերությունները, այլև իրենց գործունեության հատուկ
ձևերով ու մեթոդներով նպաստեն դրանց վերացմանը:
Արդյունավետ աշխատանքի օրինակներից է Նաիրիի շրջանի Ջրվունու
սովխոզի կուսկազմակերպության աշխատանքը: ՀԿԿ XXVII համագումարի
պահանջների լույսի ներքո կուսկազմակերպությունը հանձնաժողովի առա-
ջարկությամբ խորությամբ վերլուծել է այգիների ինտենսիվացման հարցը և
կոմունիստների քննարկմանն է ներկայացրել մոտ 40 հեկտար այգիների վե-
րակառուցման կոնկրետ առաջարկություններ: Դրանք իրականացնելու շնոր-
հիվ միայն 1981 թվականին սովխոզում վերակառուցվել է 27 հեկտար պտղա-
տու և 26 հեկտար խաղողի այգի:
Արտադրության արդյունավետության բարձրացման վրա ուղղակի ազդե-
ցություն է գործում աշխատանքային, նյութական և ֆինանսական ռեսուր-
ների խնայողական օգտագործմանը վերահսկող հանձնաժողովների աշխա-
տանքը: Հանձնաժողովների առաջարկություններով ձեռնարկված պրակտիկ
միջոցների շնորհիվ 1981 թ. Լենինականի գուլպա-նասկեղենի միավորումում
տնտեսվել է ավելի քան 10 տոննա հումք, իսկ Ազիզբեկովի շրջանի Գնդեվազի
թռչնաֆաբրիկայում՝ 4—5 տոննա վառելիք, 7.000 կիլովատ-ժամ էլեկտրա-
էներգիա և 2.450 ռուբլու նյութեր:
Ապարատի աշխատանքի վերահսկողությունն իրականացնելու գործում
քիչ փորձ չի կուտակել «Հայգլխէներգոյի» կուսկազմակերպությունը, որը մըշ-
տապես հոգ է տանում աշխատողների քաղաքական գիտելիքները հարստաց-
նելու, տնտեսական կրթությունը և գործնական որակավորումը բարելավելու,
ապարատի աշխատողների սոցմրցությունը կազմակերպելու մասին: Կուս-
բյուրոյի նիստերում, կուսակցական ժողովներում ղեկավար մարմինների որո-
շումների, պաշտոնական պարտականությունների և կուսակցական հանձնա-
րարությունների, ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարման մասին
կանոնավոր կերպով հաշվետվություններ են տալիս վարչությունների, բաժին-
ների ղեկավարները, շարքային կոմունիստները: Հանձնաժողովի օգնությամբ
կուսբյուրոն օպերատիվ կերպով բացահայտում է թերությունները, հասնում
դրանց վերացմանը, զարգացնում կոմունիստների նախաձեռնությունը, նրանց
դաստիարակում սկզբունքայնության ոգով:
Միաժամանակ անհրաժեշտ է խոստովանել, որ հանրապետության կուս-

ղությունը պետք է իրականացվի բոլոր կոմունիստների կողմից՝ կուսկազմա-
կերպության քարտուղարի ղեկավարությամբ: Եվ, այնուամենայնիվ, նման
հանձնաժողովներ կազմավորվել են Աշտարակի, Մասիսի, Հոկտեմբերյանի,
Սպիտակի շրջանի մի շարք կուսկազմակերպություններում: Իսկ Արագածի
շրջանի 33 սակավաթիվ սկզբնական կուսկազմակերպություններում անհիմն
կերպով կազմվել է 113 մշտական հանձնաժողով: Առավել անտեղի էին մինչև
տարեվերջ հանձնաժողովների թիվը կրկնապատկելու վերաբերյալ այդ կուս-
կազմակերպությունների որոշումները: Ճիշտ չեն վարվում նաև այն սկզբնա-
կան կուսկազմակերպությունները, որոնք տվյալ տեղամասում գործերի վի-
ճակի համար ի պաշտոնե պատասխանատու կոմունիստներին ընտրում են
հանձնաժողովների կազմում: Սխալ է նաև այն պրակտիկան, երբ առանձին
սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում
լուության են մատնում հանձնաժողովների աշխատանքի հարցերը:

Ադմինիստրացիայի գործունեության և ապարատի աշխատանքի նկատ-
մամբ վերահսկողություն իրականացնող հանձնաժողովների վերաբերյալ ՍՄԿԿ
Կենտկոմի որոշումը կուսակցական կոմիտեներին պարտավորեցնում է բարձ-
րացնել կուսկազմակերպությունների ղեկավարման մակարդակը, մշտապես
ուշադրության կենտրոնում պահել վերահսկողության իրավունքի իրականաց-
ման նպատակով կատարվող աշխատանքը, հոգ տանել դրա հրապարակայ-
նությունը և արդյունավետությունն ապահովելու մասին: Կուսակցական կոմի-
տեներին առաջարկված է պարբերաբար քննարկել կուսկազմակերպություն-
ներում ստեղծված հանձնաժողովների հաշվետվությունը, կուսակցական
գնահատական տալ նրանց գործունեությանը, հետևել հանձնաժողովների
կազմի ճիշտ ընտրությանը, դրանց աշխատանքի արդյունավետության բարձ-
րացմանը, ակտիվին սովորեցնել՝ հմտորեն ընդհանրացնելու ստուգումների
արդյունքները, զարգացնելու նախաձեռնությունը, պաշտպանելու ընկերներին
հետապնդման դեպքերից:

Վերահսկողական աշխատանքում անհրաժեշտ է ելնել ընկեր Լ. Ի.
Բրեժնևի այն ցուցումից, որ սկզբնական կուսկազմակերպությունները լիովին
և լավագույն ձևով օգտագործեն վերահսկողության իրենց իրավունքը՝ խոսքը
լինի կադրային հարցի թե տնտեսական պլանների կատարման մասին, մարդ-
կանց աշխատանքային պայմանների թե կենցաղի բարելավման մասին, որ-
պեսզի ցուցաբերվի սկզբունքայնություն, հաստատակամորեն իրականացվի
կուսակցության գիծը: Չպետք է մոռանալ, որ վերահսկողության արդյունա-
վետության հետագա բարձրացումը մեր պլանների հաջող իրականացման նա-
խապայմաններից է:

---

# ՆՈՐ ՀԱՄԱԼՐՈՒՄ

**Լ. Տ. ԿՈՍՏԱՆՅԱՆ**
ՀԿԿ Օրջոնիկիձեի շրջկոմի կազմբաժնի վարիչ

Կոմունիստական կուսակցությունը, նրա լենինյան
կենտրոնական կոմիտեն միշտ հիշեցնում են, որ կու-
սակցության դերի մեծացումը ապահովվում է ոչ թե ինքնաբերաբար ու տա-
րերայնորեն, այլ բոլոր կուսակցական կազմակերպությունների, ամեն մի կո-
մունիստի արդյունավետ, նպատակասլաց գործունեությամբ: Վ. Ի. Լենինը
սովորեցնում էր, որ կուսակցության միասնությունն ու անաղարտությունը,
նրա քաղաքական գծի ճշտությունը և, վերջին հաշվով, իր՝ կուսակցության
բախտը պայմանավորված են այն մարդկանցով, ովքեր գտնվում են նրա շար-
քերում: Հետևաբար, կուսակցության շարքերի որակական աճի և երիտասարդ
կոմունիստների դաստիարակության կազմակերպումը կուսկազմակերպու-
թյունների հիմնական և կարևորագույն խնդիրն է: Այն նոր բովանդակություն
է ձեռք բերում արդի փուլում, երբ զգալիորեն ընդլայնվել են կոմունիստական
շինարարության մասշտաբները, երկրի առջև ծառացել են նոր բարդ ու խոշոր
պրոբլեմներ, երբ ամենուրեք տնտեսական-սոցիալական խոր վերափոխումներ
են կատարվում, արագ տեմպերով զարգանում է գիտատեխնիկական հեղա-
փոխությունը:

Հաշվի առնելով իր շարքերի աճի սոցիալ-տնտեսական, դասակարգային
բարենպաստ նախադրյալները, կուսակցությունը միաժամանակ մի ամբողջ
շարք միջոցառումներ է մշակում և իրականացնում՝ բարձրացնելու պահանջ-
ները կուսակցության յուրաքանչյուր անդամի և թեկնածուի, նրա շարքերն ըն-
դունվող յուրաքանչյուր մարդու նկատմամբ: Այդ հարցի վերաբերյալ հիմնա-
րար փաստաթղթեր են կուսակցության վերջին համագումարների, ՍՄԿԿ
Կենտկոմի որոշումները, ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատությունները:

Կուսակցության արդի պահանջներին համապատասխան՝ ՍՄԿԿ շարքերի
ընդունելության հարցերը մշտապես գտնվել են ՀԿԿ Օրջոնիկիձեի շրջկոմի ու-
շադրության կենտրոնում: Կուսշրջկոմի պլենումը երկու անգամ քննարկել է
կուսակցության մեջ ընդունելության և ՍՄԿԿ անդամության թեկնածուների
դաստիարակության ասպարեզում Կիրգիզիայի կուսակցական կազմակերպու-
թյան աշխատանքի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կենսագործման առնչու-
թյամբ շրջանի կուսկազմակերպությունների խնդիրները: Պլենումներում ամ-
փոփվել են կուսակցության շարքերի համար մարդկանց ընտրության և երի-
տասարդ կոմունիստների դաստիարակության ասպարեզում շրջանի սկզբնա-
կան կուսկազմակերպությունների ծավալած աշխատանքի արդյունքները:

Շրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների համար կոնկրետ
գործունեության ուղեցույց է 1981 թ. ապրիլին ՀԿԿ Երքաղկոմի բյուրոյի «ՍՄԿԿ
շարքերի աճի կարգավորման ասպարեզում ՀԿԿ Օրջոնիկիձեի շրջկոմի կատա-
րած աշխատանքի մասին» որոշումը: Երքաղկոմի բյուրոն, դրական գործերի
հետ մեկտեղ, բացահայտեց մի շարք թերություններ՝ շրջկոմի և սկզբնական
կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրելով դրանց վերացման
վրա:

ՀԿԿ Երևանի քաղկոմի որոշումը կենսագործելու և ՍՄԿԿ շարքերի աճը
կարգավորելու նպատակով շրջկոմի բյուրոն մշակել և հաստատել է միջոցա-
ռումների պլան: Ըստ կազմակերպությունների կազմվել են տեղեկագրեր,
որոնք օգնում են վերլուծելու շրջանի արդյունաբերական, տրանսպորտի և շի-
նարարական ձեռնարկություններում ընդունելության ռեզերվի վիճակը: ՍՄԿԿ
շարքերը համալրելու ավելի լայն հնարավորություններ են ստեղծվում հատ-
կապես խոշոր ձեռնարկությունների կուսկազմակերպությունների համար: Ըն-
դունելության համար թեկնածուների ընտրության ժամանակ առաջնությունը
տրվում է առաջատար մասնագիտությունների տեր բանվոր-ծառայողներին:

Այսօր կարելի է որոշակի ասել, որ կատարված աշխատանքը տվել է իր
դրական արդյունքը: Շրջանի սկզբնական կուսկազմակերպություններն ամ-
բողջությամբ վերցրած ապահովում են կուսակցության որակական կազմի
հետագա բարելավումը: Արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմա-
կերպությունները 1981 թ. ՍՄԿԿ շարքերն են ընդունել 108 մարդ (50,2 տոկո-
սը): Անցյալ տարի, 1980 թ. համեմատությամբ, ՍՄԿԿ շարքերն ավելի շատ
մարդ են ընդունել տրանսպորտային, շինարարական ձեռնարկությունների,
բուժհիմնարկությունների և ուսումնական հաստատությունների կուսկազմա-
կերպությունները:

Շրջկոմը մեծ տեղ է հատկացնում ՍՄԿԿ շարքերի համալրման և երիտա-
սարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի բարելավմանը: Հաճախակի
քննարկում ենք առանձին կուսկազմակերպություններում կուսակցության շար-
քերի ընդունելության և թեկնածուների հետ տարվող աշխատանքի վիճակի
հարցերը: Քննարկումներն օգնում են սկզբնական կուսկազմակերպություննե-
րին՝ վերացնելու այդ ասպարեզում եղած թերությունները:

Այսպես, գործարար խոսակցություն ծավալվեց, երբ շրջկոմի կազմբաժ-
նում քննարկվում էր ՍՄԿԿ շարքերի աճի կարգավորման նպատակով Երևանի
լոկոմոտիվային դեպոյի կուսբյուրոյի կատարած աշխատանքի հարցը: Դեպոյի
տասնյակ երիտասարդներ պատվով են կատարում ստանձնած սոցիալիստա-
կան պարտավորությունները, քայլում առաջավորների շարքերում: Աճի նման
լավ բազայի պայմաններում անցյալ տարի ընդամենը երեք մարդ է ընդունվել
ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու: Քննարկման ժամանակ
պարզվեց, որ կուսբյուրոն քիչ ուշադրություն է նվիրում ընդունվողների հետ
տարվող անհատական աշխատանքին: Եվ բյուրոն լուրջ հետևություն արեց
քննադատությունից: Ահա այդ ամենի արդյունքը. ընթացիկ տարվա առաջին
կիսամյակում ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու են ընդունվել
դեպոյի առաջատար պրոֆեսիաների տեր 12 մասնագետներ:

Լոկոմոտիվային դեպոյի օրինակը եզակի չէ: Շատ սկզբնական կուսկազ-
մակերպություններ իրենց շարքերը համալրում են բանվորների և մտավորա-
կանության լավագույն ներկայացուցիչներով, որոնք քաղաքական և գործնա-
կան հատկանիշներով արժանացել են կոլեկտիվների անդամների, կոմունիստ-
ների վստահությանը: Վերջին երեքուկես տարում շրջանի սկզբնական կուս-
կազմակերպությունները ՍՄԿԿ շարքերն են ընդունել 770 մարդ, որոնցից
բանվորներ են 76,7 տոկոսը, կանայք՝ 36, կոմերիտականներ՝ 75,5 տոկոսը:

Շրջանի կուսկազմակերպությունները, ղեկավարվելով ՍՄԿԿ XXV և XXVI
համագումարների որոշումներով, որոշակի հաջողությունների են հասել կու-
սակցության շարքերն ընդունվածների մեջ բանվորների առաջատար տեղն
ապահովելու գործում: Ահա դրա վկայությունը. 1976 թ. շրջանի սկզբնական
կուսկազմակերպություններում ՍՄԿԿ շարքերն ընդունվածների 64,8 տոկոսն են
եղել բանվորներ, իսկ այս տարի՝ 76,7 տոկոսը:

Շրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների համար գործողու-
թյան ուղեցույց է ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն միտքը, որ ՍՄԿԿ-ի
մեջ երիտասարդության հարաճուն հոսքն ակնբախորեն ցույց է տալիս կու-
սակցության կենսական ուժերի անսպառելիությունը, կոմունիզմի իդեալներին
երիտասարդ սերնդի խորապես նվիրվածությունը: Մենք առաջնորդվում ենք
«ՍՄԿԿ-ի լավագույն ռեզերվը լենինյան կոմերիտմիությունն է» սկզբունքով:



Եվ դա ապացուցվում է գործով: Այսպես, 1971 թ. ՍՄԿԿ շարքերն ընդունված-
ների մեջ կոմերիտականները կազմում էին 57 տոկոսը, 1976-ին՝ 72,9, իսկ
այժմ՝ 75,5 տոկոսը:

Սովետական ժողովուրդը, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկության
հետ մեկտեղ, շուտով նշելու է ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը: Այդ տոնա-
կատարությունը մեր երկրում կվերածվի կուսակցության շուրջը սովետական
ժողովրդի համախմբվածության, կոմունիզմի կառուցման գործում նորանոր
հաղթանակներ ձեռք բերելու անխախտ վճռականության վառ ցույցի: Հոբելյանի
նախապատրաստությունը մեծ ոգևորությամբ է համակել նաև մեր շրջանի աշ-
խատավորներին, որոնք պատվով են կատարում հնգամյակի առաջադրանքնե-
րը և ստանձնած սոցպարտավորությունները: Լավերից լավագույնները ցան-
կություն են հայտնում զինվորագրվել կոմունիստական կուսակցությանը, և
նրանց համար այդպիսի հնարավորություն է ստեղծվում:

Կուսշարքերի աճի և երիտասարդ կոմունիստների դաստիարակության աս-
պարեզում դրական աշխատանք են կատարում էլեկտրատեխնիկական, պա-
հածոների, Սովետաշենի տրիկոտաժի արտադրամիավորման, լոկոմոտիվային
դեպոյի և մի շարք ձեռնարկությունների կուսկազմակերպություններ:

Արժե առանձնակի խոսել էլեկտրատեխնիկական գործարանի կուսկոմի-
տեի (քարտուղար՝ Պ. Օհանյան) աշխատանքի ուսանելի փորձի մասին: ՍՄԿԿ
շարքերի ընդունելության և երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխա-
տանքի հարցերը մշտապես գտնվում են կուսկոմիտեի տեսադաշտում: Կու-
սակցության շարքերն ընդունվել ցանկացողների համար այստեղ ստեղծվել է
հատուկ խմբակ, որտեղ ուսումնասիրում են կուսակցության ծրագիրն ու կա-
նոնադրությունը: Վերջին տարիներին կազմակերպությունը լավ համալրում է
ստացել: Կոլեկտիվում գովեստով են խոսում երիտասարդ կոմունիստներ
Աշոտ Պապիկյանի, Ոսկան Նազարյանի, Ռազմիկ Հովսեփյանի, Հաշին Բա-
բաևի, Կարինե Խաչատրյանի, Ժենյա Օհանյանի և ուրիշների մասին: Փաթեթ-
ման արտադրամասում է աշխատում երիտասարդ կոմունիստ Սուսաննա Գրի-
գորյանը: Նա պլանները սիստեմատիկաբար կատարում է 120—130 տոկոսով,
տալիս միայն բարձրորակ արտադրանք: Սուսաննան ակտիվորեն մասնակցում
է հասարակական աշխատանքներին: Դրա համար էլ երկրորդ անգամ անընդ-
մեջ կոլեկտիվի առաջադրմամբ նա ընտրվել է Օրջոնիկիձեի շրջանային սո-
վետի ժողովրդական դեպուտատ:

Կուսակցության անդամության թեկնածուները արտադրամասային կուս-
կազմակերպությունների և գործարանի կուսկոմիտեի ուշադրության կենտրո-
նում են: Բոլորին տրվում են մշտական հասարակական հանձնարարություն-
ներ, նրանք ընդգրկվում են «Երիտասարդ կոմունիստի դպրոցում»: Այսօր
ձեռնարկության կարևորագույն և պատասխանատու օղակների մեծ մասը
վստահված է վերջին տարիներին ՍՄԿԿ շարքերն ընդունված երիտասարդնե-
րին, որոնք պատվով են կատարում տրված պատասխանատու հանձնարարու-
թյունները: Նրանցից Ժորա Մուրադյանը վարում է գլխավոր ինժեների, Հեն-
րիկ Պետրոսյանը՝ գլխավոր ինժեների տեղակալի պաշտոններ: Մեխանիկական,
հավաքման, փաթեթման, գործիքային արտադրամասերի պետերի պարտա-
կանությունն են կատարում երիտասարդ կոմունիստներ Ալբերտ Աղաջանյանը,
Կամո Խոջոյանը, Սարո Բուդախյանը, Ժորա Պետրոսյանը: Իսկ Յուրի Ավե-
տիսյանը գլխավորում է աշխատանքի և աշխատավարձի բաժինը:

ՍՄԿԿ շարքերի աճի ապահովումը, սակայն, գործի մի կողմն է: Կարևորն
այն է, որ սկզբնական կուսկազմակերպությունները հոգատարություն դրսևո-
րեն կուսակցության շարքերը նոր ընդունվածների նկատմամբ և թեկնածուա-
կան ստաժն ավելի լավ օգտագործեն ընդունվողների քաղաքական, գործարար
և բարոյական հատկությունների ստուգման համար: Ահա թե ինչու կուսշրջկո-
մը կազմակերպությունների ուշադրությունը սևեռում է հատկապես երիտա-
սարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի բարելավման վրա: Վերջին
տարիներին շրջկոմի բյուրոն ո՛չ միայն կուսակցության շարքերի աճի, այլև
երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի բարելավման նպա-

տակով մշակել և իրագործել է մի շարք կոնկրետ միջոցառումներ։ Կուսքար-
տուղարների դպրոցի պարապմունքներում կազմակերպվել են բազմաթիվ սե-
մինարներ, զրույցներ, փորձի փոխանակումներ՝ կուսակցության շարքերի ըն-
դունելության, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի մե-
թոդների ու ձևերի, նրանց ինքնահաշվետվությունների կազմակերպման, երաշ-
խավորողների պատասխանատվության բարձրացման, ընդունելության գործի
կազմման և այլ հարցերի շուրջ։

Սկզբնական կուսկազմակերպությունները հոգում են նաև երիտասարդ կո-
մունիստներին մարքս-լենինյան տեսությամբ զինելու, նրանց քաղաքական
մտահորիզոնն ավելի ընդլայնելու, հասարակական ու արտադրական ակտիվու-
թյունը բարձրացնելու մասին։ ՍՄԿԿ անդամության թեկնածուները լայնորեն
ընդգրկվում են քաղաքական լուսավորության խմբակներում, շրջկոմին առըն-
թեր մի շարք սկզբնական կազմակերպություններում ստեղծված երիտասարդ
կոմունիստների դպրոցներում։ Նրանք մասնակցում են կուսակցական ժողով-
ների նախապատրաստմանը, որոշումների կատարման ստուգմանը։

Պրակտիկ աշխատանքում թեկնածուների գործնական հատկանիշների ըս-
տուգումը հնարավորություն է ընձեռում մոտիկից ճանաչելու կազմակերպու-
թյան բոլոր անդամներին, պատկերացում ունենալու նրանց գործելակերպի
մասին։ Նման մոտեցման շնորհիվ աստիճանաբար նվազում են այն դեպքերը,
երբ շրջկոմը չի հաստատում սկզբնական կուսկազմակերպությունների որո-
շումները՝ ՍՄԿԿ շարքերն ընդունվելու վերաբերյալ։ Եթե 1976 թ. շրջկոմը
չի հաստատել ինը կազմակերպությունների որոշումներ՝ տասը ընկերների
ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունելու մասին, ապա 1979 թվականին եղել
է այդպիսի ընդամենը չորս, իսկ 1982 թվականի առաջին կիսամյակում՝ մեկ
դեպք։

Մենք ձգտում ենք, որպեսզի թեկնածուական շրջանում սկզբնական կուս-
կազմակերպության որևէ օղակում պարտադիր քննարկվի թեկնածուի հաշվե-
տվությունը՝ արտադրական ու հասարակական աշխատանքներում իր ավան-
գարդային դերի մասին։ Էլեկտրատեխնիկական, «Շինանյութ» գործարանների,
Սովետաշենի տրիկոտաժի արտադրական միավորման, «Երևան» կայարանի և
այլ սկզբնական կուսկազմակերպություններում ՍՄԿԿ անդամության թեկնա-
ծուների հաշվետվությունների քննարկումը սիստեմատիկ բնույթ է կրում։
«Երևան» կայարանի կուսկազմակերպությունում հաշվետվությունը քննարկում
են ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու ընդունվելուց վեց ամիս հե-
տո։ Դա օգնում է ճիշտ գնահատելու այդ ընթացքում թեկնածուի կատարած
աշխատանքը, վեր հանելու թերությունները և հնարավորություն ստեղծելու
դրանք ժամանակին վերացնելու համար։ ՍՄԿԿ անդամության թեկնածու Ար-
մենակ Շահնազարյանի հաշվետվության քննարկումից հետո զգալիորեն բա-
րելավվել են նրա ղեկավարած տեղամասի գործերը։ Նրա հերթափոխը լավա-
գույններից է կայարանի կոլեկտիվում, սիստեմատիկաբար կատարում է օրվա
նորմաները, գնացքների ընդունումը և տեսակավորումը կազմակերպում հըս-
տակորեն, բարձր որակով։ Հաշվի առնելով այս ամենը՝ կուսկազմակերպու-
թյունը Ա. Շահնազարյանին ընդունել է ՍՄԿԿ շարքերը որպես անդամ։

Նման օրինակներ կան նաև մյուս կազմակերպություններում։ Եվ օրինա-
չափ է, որ կուսկազմակերպությունների ծավալած համակողմանի աշխատան-
քի շնորհիվ ներկայումս շրջանում ՍՄԿԿ անդամության ժամկետանց թեկնա-
ծուներ չունենք։

ՍՄԿԿ շարքերի աճի կազմակերպման գործին մեծապես օգնում է շրջկոմի
կուսակցական հանձնաժողովը։ Կուսհանձնաժողովը շաբաթը մեկ հրավիրում
է իր հերթական նիստը, նախօրոք պարզում, թե ինչպես են պահպանվել ՍՄԿԿ
շարքերն ընդունվելու պահանջները։ Ուշադրությունը հատկապես նվիրվում է
կանոնադրական պարտականությունների կատարման, ընդունելության գործի
կազմման ճշտության, ընդունվողի քաղաքական-գաղափարական պատրաստ-
վածության վրա։ Պարզվում է, թե որքանով է նա ծանոթ կուսակցության
պատմության առանցքային հարցերին, ՍՄԿԿ ծրագրին ու կանոնադրությանը,



Կենտկոմի որոշումներին և միջազգային հրատապ խնդիրներին։ Հանձնաժո-
ղովի նիստերի ժամանակ զրույցները վարվում են այնպես, որ երիտասարդ-
ները նաև սովորեն, ճիշտ պատկերացում կազմեն այն պահանջների մասին,
որոնք նշված են կուսակցության XXVI համագումարի փաստաթղթերում։
Շրջկոմի բյուրոն միշտ հաշվի է առնում կուսհանձնաժողովի կարծիքը, նրա
եզրակացությունները լուրջ հիմք են վերջնական որոշում ընդունելու համար։

Սակայն ճիշտ չի լինի, եթե չխոսենք նաև մեզ հուզող այն թերությունների
մասին, որոնք առկա են շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում։
Բանն այն է, որ առանձին կազմակերպություններ դեռևս բավարար չափով չեն
վերակառուցել իրենց աշխատանքը կուսակցության XXVI համագումարի և
ՍՄԿԿ կանոնադրության պահանջների ոգով։ Թեկուզև աճի հարցը։ Չնայած
տարեցտարի ավելանում է ընդունելություն կատարող կուսակցական կազմա-
կերպությունների թիվը, սակայն դեռևս քիչ չեն նաև աճ չապահովող կազմա-
կերպությունները։ Այսպես, անցյալ տարի ընդունելություն չեն կատարել տե-
ղական շինանյութերի կոմբինատի, ասֆալտբետոնի № 1 գործարանի, կահույ-
քի նորոգման և պատվերների ֆաբրիկայի, «Էրեբունի» անտառտնտեսության,
№ 3 տրեստի, № 4 բեռնատար ավտոձեռնարկության և այլ կուսկազմակեր-
պություններ։ 1982 թվականի առաջին կիսամյակում նույնպես նրանք ոչ մի
մարդ չեն ընդունել ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու։

Շրջանի սկզբնական կուսկազմակերպություններն ու նրանց բյուրոները
դեռևս շատ անելիքներ ունեն երաշխավորող կոմունիստների պատասխանա-
տվությունը բարձրացնելու գործում։ Քիչ չեն դեպքերը, երբ երաշխավորող
կոմունիստը լավ չի ճանաչում ընդունվողին, իսկ կուսկազմակերպությունը
հետագայում հաշիվ չի պահանջում նրանից։ Առանձին կոմունիստների մոտ
անպատասխանատվությունը հասել է այն աստիճանի, որ առանց խորությամբ
ուսումնասիրելու տվյալ անձի անցյալը, նրա գործունեությունը, երաշխավո-
րում են նրան՝ փաստորեն անծանոթ մարդու։ Ահա մի բնորոշ օրինակ. 1981 թ.
փետրվարին «Հիդրոհաղորդակ» գործարանի կուսկազմակերպությունը ՍՄԿԿ
շարքերը որպես անդամության թեկնածու ընդունում է Արամ Պարսամյանին։
Մինչդեռ կոմունիստները և, առաջին հերթին, երաշխավորողները՝ Է. Բաբա-
յանը, Ս. Եգանյանը և կոմերիտական կազմակերպությունը, նրան մոտիկից
ու խորությամբ չէին ճանաչել։ Նրանց անհայտ են եղել կուսակցության շար-
քերն ընդունվողի անձնական հակումները, բարոյական կերպարը։ Եվ ահա
հետևանքը. 1981 թ. սեպտեմբերին Պարսամյանը հակահասարակական արարք
կատարելու համար դատապարտվել է երկու տարի ազատազրկման և հեռաց-
վել կուսակցության շարքերից։ Տեղին է հիշեցնել ՍՄԿԿ XXVI համագումարի
պահանջը՝ «Ոչ մի ավելորդ ներողամտություն և ոչ մեկի նկատմամբ, երբ
խոսքը վերաբերում է մեր կուսակցության պատվին ու հեղինակությանը, նրա
շարքերի անաղարտությանը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 112)։

Ներկայումս շրջանային կոմիտեն մեծ ուշադրություն է նվիրում երաշ-
խավորությունների բովանդակությանը։ Պահանջը մեկն է՝ այն պետք է լրիվ
պատկերացում տա ընդունվողի մասին, բովանդակի ընդունվողի աշխատան-
քային-հասարակական բազմակողմանի գործունեությունը։ Շրջկոմը բազմա-
թիվ առիթներով քննադատել է այն կուսկազմակերպություններին, որտեղ
երաշխավորող կոմունիստները երաշխավորության մեջ նշում են միայն
ընդունվողի դրական հատկանիշները։ Այն տպավորությունն է ստեղծվում, թե
ՍՄԿԿ շարքերն ընդունվողները զերծ են ամենափոքր թերությունից անգամ։
Մինչդեռ շատ ավելի ճիշտ կլիներ նշել թերությունները և նրա ուշադրությունը
հրավիրել դրանց վերացման վրա։

Կուսակցական ժողովը կոմունիստների դաստիարակության դպրոց է։
Այդպիսին է այն հատկապես կուսակցության մեջ նոր ընդունվողի համար։
Վերջին տարիներին շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները մեծ ուշա-
դրություն են նվիրում հրավիրվող ժողովների կազմակերպական և քաղաքա-

կան բովանդակության հարստացման վրա: Ժողովում կուսշարքերն ընդունվողի հարցը քննարկելիս պետք է կարողանալ տեսնել նրա և՛ ուժեղ, և՛ թույլ կողմերը, հաշվի առնել քաղաքական հասունությունը, սկզբունքայնությունը, հեղինակությունը կոլեկտիվում և այլն: Չէ՛ որ կուսակցական դռնբաց ժողովին մասնակցում են նաև մեծ թվով երիտասարդներ, կոմերիտականներ, որոնց համար այն պետք է դաս լինի, հետք թողնի նրանց բարոյական դաստիարակության վրա և համակի կազմակերպության նկատմամբ խորին հարգանքի զգացումով:

Կուսակցության բարձր հեղինակությունը պայմանավորված է նրա անդամներից յուրաքանչյուրի հեղինակությամբ: Աշխատանքում, շրջապատում իր վարքագիծը կոմունիստը պարտավոր է գնահատել հենց այդ տեսանկյունից: Կուսակցության հեղինակությունը մեր հզոր զենքն է, որն օգնում է մոբիլիզացնելու ամենալայն զանգվածներին, նրանց դարձնելու կոմունիզմի գործին նվիրված գիտակից մարտիկներ:

Օրջոնիկիձեի շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները, շրջանային կոմիտեն այսուհետ ևս կանեն ամեն ինչ՝ կուսակցության շարքերի որակական կազմի բարելավման, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքը ամուր հիմքերի վրա դնելու համար:

---



# ՀԱՑԱՀԱՏԻԿԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

**Ն. Գ. ՄՈՒՐԱԴՅԱՆ**
Կենսաբանական գիտությունների թեկնածու

ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐՈՒՄ առանձնակի շեշտվում է հացահատիկի արտադրության արագ և հաստատուն ավելացումը: Խնդիր է դրվում ապահովել երկրի հարաճուն պահանջմունքների բավարարումը բարձրորակ պարենային և ֆուրաժային հացահատիկի նկատմամբ, ունենալ հացահատիկի անհրաժեշտ պետական ռեզերվներ և դրա արտահանման ռեսուրսներ: ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումը նշեց, որ դա ոչ միայն առաջնահերթ տնտեսական, այլև հրատապ սոցիալ-քաղաքական խնդիր է:

Հացահատիկի արտադրության ավելացման հիմնական ուղին բերքատվության բարձրացումն է: Իսկ գլխավորն այսօր, և մանավանդ վաղը, ասաց պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևը, այն է, որ դաշտերի բերքատվությունը բարձրացվի սելեկցիայի և սերմնաբուծության բարելավման, պարարտանյութերի արդյունավետ օգտագործման, յուրաքանչյուր գոտու և մարզի, շրջանի, տնտեսության բնական պայմանների հաշվառմամբ հողագործության գիտականորեն հիմնավորված սիստեմի ներդրման հաշվին: Նախատեսվում է առաջիկա տասնամյակում հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվությունը բարձրացնել 6—7 ցենտներով և մինչև 1990 թվականը հասցնել 21—22 ցենտների: Տասնմեկերորդ հնգամյակում հացահատիկի տարեկան միջին արտադրության բնագիծը սահմանվում է 238—243 միլիոն տոննա, իսկ տասներկուերորդ հնգամյակում՝ 250—255 միլիոն տոննա:

Հայկական ՍՍՀ-ում գյուղատնտեսության այլ կուլտուրաների հետ մեկտեղ մեծ կարևորություն ունի հացահատիկային տնտեսության զարգացումը: Հացահատիկի արտադրության ավելացման պրոբլեմի առանձնահատուկ նշանակությունն այն է, որ դրա հաջող լուծմամբ է պայմանավորված բնակչության պահանջմունքների առավել լրիվ բավարարումը ոչ միայն հացով, այլև կաթով, մսով և անասնապահական մյուս մթերքներով:

Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1982 թ.) պլենումում, հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացումը մեծապես պայմանավորված է սերմնաբուծության և սորտերի սելեկցիայի զարգացման մակարդակով: Եվ դա հասկանալի է. տեղական պայմաններին հարմարեցված բարձրարդյունավետ սորտերը լավ են դիմանում եղանակի անբարենպաստ պայմաններին և կայուն բերք են ապահովում: Այս կարևորագույն խնդրի հաջող լուծման համար անհրաժեշտ է իրականացնել մի շարք միջոցառումներ, որոնք առնչվում են հողի բերրիության բարձրացման, հացահատիկային կուլտուրաների մշակության առաջավոր տեխնոլոգիայի օգտագործման, սելեկ-

90—100 ցենտների։ Ընթացիկ հնգամյակում «Կանգուն—20» սորտի ցանքա-
տարածությունները նախատեսված է հասցնել 12 հազար հեկտարի։
«Սևանի—4» սորտը աչքի է ընկնում հասկի բարձր արդյունավետությամբ,
ուժեղ թփակալմամբ և կարճացողունությամբ (80—85 սմ)։ Ջմռադիմացկուն
է, որը անչափ կարևոր է սորտը լեռնային շրջաններում տարածելու համար։
Հատիկները խոշոր են, 1.000 հատիկը կշռում է 52,6 գրամ, որը 7—10 գրա-
մով ավելի է «Բեզոստայա—1» ստուգիչ սորտից։ Հացաթխման որակը շատ
լավ է (4,5 բալ)։ Դիմացկուն է բոլոր սնկային հիվանդությունների նկատ-
մամբ։ Ինստիտուտի Մարտունու փորձնական զոնալ կայանի երեք տարվա
տվյալներով «Սևանի—4» սորտի միջին բերքը կազմել է 57,1 ցենտներ, որը
8—12 ցենտներով ավելի է «Բեզոստայա—1» սորտից։ Այս սորտը արտադրա-
կան փորձարկումների ժամանակ (5 հեկտար) ապահովել է միջին հաշվով
56,4 ցենտներ բերք։ Միայն 1982 թվականին այս սորտից շուրջ մեկ տոննա
բարձրորակ էլիտային սերմացու է ուղարկվել երկրի 45 փորձադաշտերին։ Նա-
խատեսվում է «Սևանի—4» սորտը շրջանացնել Սևանի ավազանի, Շիրակի
հարթավայրի և լեռնային մյուս շրջաններում։

Բացառիկ հետաքրքրություն է ներկայացնում ինստիտուտում բուծած աշ-
նանացան ցորենի նոր բերքատու և ժանգադիմացկուն «Արմյանկա—60» սորտը,
որն արտադրական փորձարկման մեջ է գտնվում։ Այս սորտը վաղահաս է և
բերքատու։ Հասունանում է «Բեզոստայա—1» սորտից 4—5 օր շուտ։ Պոտեն-
ցիալ բերքատվությունը հասնում է մինչև 90 ցենտների։ Չի պառկում, կան-
գուն է, ունի շատ ամուր ցողուն (մինչև 90 սմ)։ Բավականին դիմացկուն է
ժանգերի, մրիկների, ալրացողի և արմատային փտախտի նկատմամբ ոչ
միայն բնական, այլև արհեստական վարակի ֆոնի պայմաններում։ Ջմռա-
դիմացկուն է, աչքի է ընկնում ցանքի համահավասարությամբ և միատարրու-
թյամբ։ Հատիկը սպիտակ է (որն անչափ կարևոր է), ապակենման, հասու-
նանալուց չի թափվում, կալսվում է հեշտությամբ։ 1.000 հատիկը կշռում է
53,5 գրամ, հասկում հատիկների թիվը հասնում է 55—58-ի, որը 10—12
հատիկով ավելի է «Բեզոստայա—1»-ից, սպիտակուցի պարունակությունը 15,5
տոկոս է, իսկ սոսնձանյութինը՝ 36,8։ Ուժեղ ցորեն է, տալիս է գերազանց
ալյուր, որն անչափ կարևոր է լավաշի արտադրության համար։ Ինստիտուտի
Մերձավանի զոնալ կայանում նախնական կոնկուրսում «Արմյանկա—60»-ը
իր բերքատվությամբ բռնել է առաջին տեղը։ Այն «Բեզոստայա—1» սորտին
գերազանցել է 11,5 ցենտներով, ստուգիչի՝ 44,5 ցենտների դիմաց, որը Մեր-
ձավանի քարքարոտ դաշտերի պայմաններում բարձր բերք է։

Հարկ է նշել, որ «Արմյանկա—60» սորտը անցած հնգամյակի չորս տա-
րիներին իր բերքատվության (և ոչ միայն բերքատվության) ցուցանիշներով
դեռ չի զիջել ոչ մի սորտի։ Հոկտեմբերյանի, Էջմիածնի և Արարատի շրջան-
ների մի շարք տնտեսություններում արտադրական փորձարկումների ժամա-
նակ «Արմյանկա—60»-ը հեկտարի հաշվով ապահովել է 60—65 ցենտներ
միջին բերք։ 1983 թ. համար Արարատի շրջանի 20 կոլտնտեսությունների ինս-
տիտուտն ապահովել է աշնանացան ցորենի «Արմյանկա—60» սորտի էլիտա-
յին սերմացուով։

Ցորենի այս նոր հեռանկարային սորտը լայն փորձարկվում է նաև Աշ-
տարակի, Աբովյանի, Արթիկի, Սիսիանի, Գորիսի և Կամոյի շրջաններում։ Ըն-
թացիկ հնգամյակում ռեալ հնարավորություններ կան «Արմյանկա—60»-ը
փորձարկելու նաև հանրապետությունից դուրս։ Սորտի բոլոր ցուցանիշները
վկայում են նրա հաստատման և շրջանացման մասին։ Պետական սորտափոր-
ձարկման մեջ են գտնվում նաև «Ալբիդում—6» և «Լենինականի—5» սելեկցիոն
նոր սորտերը, որոնք բարձր բերքատու և արժեքավոր են հատկապես իմունի-
տետի և հատիկի որակական ցուցանիշների համար։

«Ալբիդում—6» սորտը նախատեսված է շրջանացնելու Արարատյան հար-
թավայրի, Աբովյանի, Աշտարակի, Նաիրիի և Թալինի շրջանների ջրովի հո-



ղերում, իսկ «Լենինականի—5»-ը՝ Շիրակի հարթավայրի և հարակից լեռնա-
յին շրջաններում։ Կազմակերպված է այդ սորտերի սերմնաբուծությունը։

Այսպիսով, պետական սորտափորձարկման հանձնված աշնանացան ցո-
րենի նշված հինգ սորտերը, որոնք աստիճանաբար իրենց հաստատուն տեղն
են զբաղեցնում գյուղատնտեսության հողակլիմայական տարբեր գոտիներում,
կարող են հանրապետությունում փոխարինել «Բեզոստայա—1» սորտին։ Նախ-
նական հաշվարկներով այդ սորտերի տարեկան տնտեսական եկամուտը կկազ-
մի շուրջ 3—4 մլն ռուբլի։

Ինստիտուտում բուծված նոր սելեկցիոն սորտերի տնտեսական և կեն-
սաբանական առանձնահատկությունների ու բերքատվության պոտենցիալ
հնարավորությունների բացահայտումը և բազմակողմանի գնահատումը հո-
ղակլիմայական կոնկրետ պայմաններում հնարավորություն կընձեռի թար-
մացնելու աշնանացան ցորենի սորտային կազմը, որն էապես կնպաստի առա-
վել բարձր բերքի ստացմանը։

ՀԿԿ Կենտկոմի 1982 թ. հոկտեմբերյան պլենումը խնդիր դրեց մշակել
սելեկցիոն-սերմնաբուծական աշխատանքի արմատական բարելավման միջո-
ցառումներ՝ ապահովելու համար հացահատիկային տնտեսության ինտենսի-
վացման պահանջներին համապատասխանող հացահատիկային կուլտուրաների
բարձրարդյունավետ նոր սորտերի ու բարձր վերարտադրությունների տեսակա-
վոր սերմացուի առավել արագ ստեղծումը և արտադրության մեջ նրանց ներ-
դրումը՝ տնտեսությունների պահանջմունքները լիովին բավարարող քանակու-
թյուններով։

Մեր խնդիրն է ապահովել այդ կարևորագույն առաջադրանքի կատարումը։

# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՋՐԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԸ

**Ս. Մ. ՄՈՒՍԱՅԵԼՅԱՆ**
**Տեխնիկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ մեծ ոգևորությամբ ձեռնամուխ է եղել ՍՍՀՄ պարենային ծրագրի կենսագործմանը: Այդ ծրագրի հաջող իրականացման գործում մեծ է բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և աղտոտումից ու սպառվելուց դրանց պահպանման հետազոտությունների նշանակությունը:*

*Ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը կենսական նշանակություն ունի մեր հանրապետության համար: Հայաստանի ընդհանուր ջրային ռեսուրսները (գետային հոսքը և ստորերկրյա ջրերը) միջին ջրառատության տարվա համար կազմում են 7.565 մլն խմ կամ ՍՍՀՄ ջրային ռեսուրսների ընդամենը 0,16 տոկոսը: Ինչպես տեսնում ենք, ռեսուրսները չափազանց սակավ են: 1981 թ. տվյալներով ՍՍՀՄ մեկ բնակչին բաժին ընկնող ջրի քանակությունը տարեկան կազմում էր 16,4 հազար խմ, իսկ մեր հանրապետության մեկ բնակչին՝ ընդամենը 2,39 հազար խմ կամ 7 անգամ պակաս Միության միջինից: Հաշվարկները ցույց են տալիս, որ հանրապետության ջրապահովվածության այդ ցուցանիշը 1990 թվականին կնվազի մինչև 1,97, իսկ 2000-ին՝ 1,70 հազար խմ:*

*Ջրային ռեսուրսներով առանձնապես աղքատ են Կամոյի, Սևանի, Արթիկի և Թալինի շրջանները, որտեղ մեկ բնակչին բաժին ընկնող ջրի քանակությունը կազմում է տարեկան 0,4—1,1 հազար խմ: Իսկ ստորերկրյա ջրերի պաշարով խիստ աղքատ են Սպիտակի, Անիի, Գուգարքի, Թումանյանի, Իջևանի, Շամշադինի, Կրասնոսելսկի, Նոյեմբերյանի, Եղեգնաձորի և Ղափանի շրջանները: Ընդհանուր ջրային ռեսուրսներով համեմատաբար հարուստ են Սիսիանի, Ազիզբեկովի և Արագածի շրջանները, որտեղ մեկ բնակչին ընկնող տարեկան ջրի քանակը կազմում է 16—20 հազար խմ:*

*Հայկական ՍՍՀ ջրային ռեսուրսները հիմնականում օգտագործվում են հողերի ոռոգման, արոտավայրերի ջրարբիացման, բնակավայրերի և արդյունաբերության ջրամատակարարման, ձկնային տնտեսության, ինչպես նաև էլեկտրաէներգիա ստանալու համար:*

*Ջրի ամենամեծ ծախսը (73,8 տոկոս) կատարվում է գյուղատնտեսական հողերի ոռոգման համար, խմելու, տնտեսական նպատակներով ծախսվում է 12,2 տոկոս և արդյունաբերական ջրամատակարարման համար՝ 10,9, ձկնային տնտեսության համար՝ 3,1 տոկոս: Ջրօգտագործման միջին աճը տասներորդ հնգամյակում կազմել է 5,5 տոկոս: Հանրապետությունում ձեռնարկված միջոցառումները (շրջադարձային ջրամատակարարում, կորուստների կրճատում, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործում և այլն) հնարավորություն ընձեռեցին զգալիորեն կրճատելու արդյունաբերական նպատակներով օգտագործվող ջուրը:*

*Ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում ջրօգտագործումը դիտարկենք ավելի հանգամանորեն:*



Ոռոգում և ջրարբիացում: *Ոռոգվող հողատարածությունները և այդ նպատակների համար ծախսվող ջրի քանակն ունի հետևյալ պատկերը.*

ՋՐԱՍՊԱՌՈՒՄԸ ՀՍՍՀ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

(Ջրային ռեսուրսների օգտագործման և պահպանման հանրապետական կոմիտեի տվյալներով)

| Տարիներ | Ոռոգվող մակերեսը, հազար հա | | | Օգտագործված ջուրը | |
|---|---|---|---|---|---|
| | տարվա վերջում | օգտագործված է գյուղարտ. մեջ | Իրականում ոռոգված է | մլն խմ | 1 հա-ի համար. հազ. խմ |
| 1976 | 255,1 | 249,6 | 215,3 | 2607 | 12,1 |
| 1977 | 259,2 | 253,8 | 224,4 | 2557 | 11,4 |
| 1978 | 264,0 | 257,8 | 231,8 | 2697 | 11,7 |
| 1979 | 267,9 | 262,2 | 235,5 | 2533 | 10,7 |
| 1980 | 268,6 | 263,2 | 223,7 | 2684 | 12,0 |
| 1981 | 278,0 | 262,0 | 262,0 | 2510 | 10,0 |

*Տվյալները ցույց են տալիս, որ վերջին տարիներին նկատվել է ոռոգվող հողերի զգալի թերօգտագործում: Ոռոգում չանցկացնելու պատճառներն են՝ ոռոգման ջրի պակասը, ներտնտեսային և միջտնտեսային ջրանցքների անսարքությունը, ոռոգման ենթակա հողերի կապիտալ հարթագծման բացակայությունը:*

*Ուշադրության արժանի է այն փաստը, որ ոռոգման համար օգտագործվող ջուրը նախատեսված նորմայից մոտ 25 տոկոսով ավելի է ծախսվում: Դա հետևանք է այն բանի, որ տարիներ շարունակ չի լուծվում գիշերային ջրման հարցը, դանդաղ է ներդրվում ջրման առաջավոր տեխնոլոգիան, ցածր է ոռոգման ցանցերի օգտակար գործողության գործակիցը:*

*Հանրապետության արոտավայրերի ընդհանուր մակերեսը 688,3 հազար հեկտար է, որը բոլոր գյուղատնտեսական հանդակների մոտ կեսն է: Ջրարբիացվող արոտավայրերի մակերեսը 1980 թ. եղել է 485 հազար հեկտար: Ջրարբիացման համար օգտագործվող ջրի հաշվառում հանրապետությունում չի տարվում, որը, իհարկե, լուրջ թերություն է:*

Բնակավայրերի ջրամատակարարում: *Հայկական ՍՍՀ-ի երկրորդ խոշոր ջրասպառողը բնակչությունն է, որի աճին և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանը զուգընթաց տարեցտարի լավանում է նաև բնակավայրերի ջրամատակարարումը: Կառուցվում են նոր ջրատարներ, վերակառուցվում են հները, բարելավվում է խմելու ջրի որակը:*

*Հանրապետության բնակավայրերին մատակարարվում են հիմնականում աղբյուրների ջրեր, որոնց ընդհանուր դեբիտը կազմում է վայրկյանում 50 խմ: Աղբյուրների ջուրը կազմում է խմելու-տնտեսական ջրի ավելի քան 90 տոկոսը: Խմելու-տնտեսական ամբողջ ջրի 75 տոկոսը տրվում է քաղաքային, 25 տոկոսը՝ գյուղական բնակչությանը:*

*Ավելի մանրամասն դիտարկենք մոտակա հեռանկարում հանրապետությունը խմելու-տնտեսական ջրով ապահովելու հարցերը: Արդեն հայտնաբերված ստորերկրյա քաղցրահամ ջրերի պաշարները հանրապետության տարածքի վրա տեղաբաշխված են բավական նպաստավոր ձևով: Այսպես, հանրապետության ամենախոշոր տնտեսական շրջանը՝ Արարատյանը, աչքի է ընկնում ստորերկրյա ջրերի զգալի ռեսուրսներով (Արարատյան արտեզյան ավազանը, Ազատ, Վեդի, Հրազդան, Քասախ—Սևջուր գետերի ավազանները): Շիրակի տնտեսական շրջանը նույնպես հարուստ է ստորերկրյա ջրերով, իսկ Լոռու շրջանին հարում են ստորերկրյա ջրերով բավական հարուստ Դեբետ գե-*

տի ավազանը, ինչպես նաև Լոռու և Նալբանդի սարահարթերը։ Սևանի տնտեսական շրջանում կան հորդառատ աղբյուրներ, այստեղ է գտնվում նաև Մաղրայի արտեզյան հարթավայրը։ Ստորերկրյա ջրերով հարուստ է նաև Սյունիքի տնտեսական շրջանը։

Չնայած ստորերկրյա և աղբյուրների ջրերի նման առատությանը, մեր հանրապետության քաղաքների և հատկապես Երևանի, Լենինականի ու Կիրովականի ջրամատակարարումը բարվոք համարել չի կարելի։ Մի փոքր համառոտակի անդրադառնանք մեր մայրաքաղաքի ջրամատակարարման վիճակին, որն ինչ-որ չափով բնորոշ է նաև հանրապետության մյուս քաղաքների համար։

Երևանի ջրամատակարարումն ունի դարերի պատմություն։ Չնայած Երևանի շրջակայքում բազմաթիվ սառնորակ և ջրառատ աղբյուրների առկայությանը, քաղաքի բնակչությունը մինչև XX դարի սկիզբը տառապում էր ջրի պակասությունից։ Առաջին լուրջ ինժեներական ջրատարի շինարարությունն իրականացվում է միայն 1909—1911 թթ.։ Քառասուն աղբյուրների (Կաթնաղբյուրի) անուշահամ ջուրը հասնում է Երևան։ Ջրմուղը կառուցվել է բարձր որակով, 250—150 մմ տրամագծով չուգունե խողովակներով։ Այդ ժամանակ 30 հազար բնակչություն ունեցող քաղաքը ստանում էր օրական 200 հազար դույլ ջուր (23 լիտր մեկ վայրկյանում)։ Ջրի զգալի մասը ծախսվում էր արտադրական նպատակներով, իսկ մնացածը, բնականաբար, չէր բավարարում անգամ բնակչության տարրական պահանջները։

Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո մայրաքաղաքը արագորեն աճեց, զարգացավ, ստեղծվեցին արդյունաբերական նոր ձեռնարկություններ, ավելացավ ազգաբնակչությունը, բարձրացավ նրա կուլտուր-կենցաղային մակարդակը, կատարվեցին մեծ ծավալի շինարարական աշխատանքներ։ Ջուրը չէր բավարարում օրեցօր աճող պահանջները։ Կառուցվեցին նոր ջրատարներ։ 1933 թվականին արդեն Երևան էր մտնում վայրկյանում 615 լիտր ջուր, 1937-ին՝ 935, 1972-ին՝ 8.600 լիտր, իսկ այժմ՝ 11.000 լիտր ջուր։ Երևանն այսօր ունի հզոր ջրմուղային տնտեսություն։ Քաղաքին ջուր են մատակարարում 14 ջրատարներ՝ 250 կմ ընդհանուր երկարությամբ, գործում են 9 պոմպակայան, 18 ջրամբար։ Այսօր Երևանի մեկ բնակչին օրական ընկնում է 895 լիտր ջուր (արդյունաբերության կարիքների համար ծախսվող ջրի հետ միասին) սկզբնական շրջանի 66 լիտրի դիմաց, այսինքն՝ ավելացել է 14 անգամ։

Դրան զուգընթաց պետք է նշել, որ չնայած ջրի այսպիսի վիթխարի քանակությանը, Երևանում խմելու-տնտեսական ջրի մատակարարման հարցում լուրջ դժվարություններ կան։ Ջուրը տրվում է բնակիչներին գրաֆիկով, օրական մի քանի ժամ։ Իհարկե, պատճառներն այստեղ շատ են, բայց հիմնականը, մեր կարծիքով, այն է, որ քաղաք մտնող ջրի համարյա կեսը ծախսվում է արտադրական-տեխնոլոգիական նպատակների համար։ Բարվոք չէ վիճակը հանրապետության մյուս քաղաքներում։ Օրինակ, Կիրովականում խմելու ջրի երկու երրորդը ծախսվում է արտադրության մեջ, Լենինականում՝ մոտ կեսը, Ղափանում՝ 65 տոկոսը։ Համեմատության համար նշենք, որ, օրինակ Պրագայում այդ նպատակներով օգտագործվող ջուրը կազմում է ընդամենը 11 տոկոս, Անտվերպենում՝ 15, Լոնդոնում՝ 25։ Իսկ ինչքա՞ն ջուր է կորչում քաղաքային ջրմուղի և բնակելի շենքերի ու արտադրական ձեռնարկությունների ցանցերի անսարքության, ինչպես և շռայլումների պատճառով։ Ամենահամեստ հաշվարկներով՝ ոչ պակաս քան 40 տոկոսը...

Հեռանկարում հանրապետության բնակավայրերի խմելու-տնտեսական ջրի մատակարարումն ընդհանուր գծերով կարելի է իրականացնել հետևյալ կերպ։ Ջրի նկատմամբ Երևանի աճող պահանջարկը բավարարելու նպատակով հարկ կլինի տեխնիկական ջրասպառումը և ջրօգտագործումն հիմնականում իրականացնել Հրազդան գետի ջրերի հաշվին, ինչպես նաև չեչտակիորեն կրճատել առկա կորուստները։ Արարատյան տնտեսական շրջանի փոքր քաղաքների և բնակավայրերի խմելու-տնտեսական ջրամատակարարումը պետք է կատարել ի հաշիվ Արարատյան արտեզյան ավազանի ստորերկրյա ջրերի։

Հրազդան քաղաքի ջրամատակարարումը կարելի է իրականացնել Մաքրավանքի աղբյուրներից, իսկ տեխնիկական ջրամատակարարումը ամբողջությամբ ապահովել Հրազդան գետի ջրերով։



Լենինականի հեռանկարային ջրամատակարարումը կարելի է իրագործել Ջուլգաղբյուրի, Վարդբաղի, Սեպասարի, Ղազանչիի աղբյուրների, ինչպես նաև Լենինականի սարահարթի ստորերկրյա ճնշումային ջրերի հաշվին։ Այս ջրերը բավական են նաև Շիրակի տնտեսական շրջանի փոքր քաղաքների և բնակավայրերի պահանջները բավարարելու համար։ Տեխնիկական ջրամատակարարումը կիրագործվի Ախուրյան գետի հաշվին։

Սևանի ավազանի բոլոր քաղաքների և բնակավայրերի ապագա ջրամատակարարումը կարելի է իրականացնել աղբյուրների, ինչպես նաև Մաղրայի արտեզյան ավազանի ստորերկրյա ջրերով։

Կիրովականի ջրամատակարարման համար կարող են օգտագործվել Մայմեխի, Այբուլախի, Հաջիղարայի, Վարդանլուի, Լերմոնտովի և Բզովդալի աղբյուրները։ Լրիվ կարող են օգտագործվել Նովոսելցովոյի, Ակսյուտինսկի և Կզիլկալայի աղբյուրները, ինչպես նաև Փամբակ գետի լճա-ալյուվիալ նստվածքների ջրերը։ Քաղաքի տեխնիկական ջրի պահանջն ամբողջովին կլուծվի Փամբակ գետի ջրերի հաշվին։

Ալավերդի քաղաքի հեռանկարային ջրամատակարարման պահանջները նպատակահարմար է բավարարել Ագարակի խմբի աղբյուրների հաշվին, իսկ տեխնիկական ջրամատակարարումը՝ Դեբեդ գետի։

Զգալի դժվարություններ է ներկայացնում Աղստեֆ, Թավուշ և Հախում գետերի ավազանների որոշ փոքր քաղաքների և գյուղերի ջրամատակարարումը։ Աղբյուրներն այստեղ սակավաջուր են և գտնվում են բնակավայրերից զգալի տարածությունների վրա։ Այդ պատճառով հեռանկարային ջրամատակարարումը այստեղ կպահանջի զգալի կապիտալ ներդրումներ։

Ղափանի խմելու-տնտեսական ջրամատակարարման պահանջները բավարարելու համար անհրաժեշտ է օգտագործել Կրխբուլախի և Շիշկերտի աղբյուրների ջրերը։ Տեխնիկական ջուրը պետք է վերցվի Ողջի, Գեղի և Վաչագան գետերից։ Քաջարանի ջրամատակարարումն ապահովելու համար անհրաժեշտ է Յաղլու-Դարայի առվակից բացի օգտագործել նաև Սակարսու առվակի, Գեղիի աղբյուրի ջրերը։ Տեխնիկական ջրամատակարարումը կիրականցվի Ողջի և Գեղի գետերի ջրերով։

**Արդյունաբերական ջրամատակարարում։** Հայկական ՍՍՀ-ի տերիտորիայում այժմ գործող հարյուրավոր արդյունաբերական օբյեկտներն օգտագործում են տարեկան մինչև 400 մլն խմ ջուր, որի 40 տոկոսը՝ մակերեսային է, իսկ 60 տոկոսը՝ ստորերկրյա։ Արդյունաբերական ջրամատակարարման մոտ 35 տոկոսը աղբյուրների մաքուր քաղցրահամ ջրերն են։ Տեղին է նշել, որ վատ է իրագործվում «Խմելու ջրի ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին» Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի 1978 թվականի որոշումը։ Չի լուծվում արտադրության մեջ օգտագործվող խմելու ջուրը տեխնիկականով փոխարինելու հարցը, ձեռնարկություններում աննշան է շրջադարձային ջրօգտագործումը։

**Ձկնաբուծություն։** Այս նպատակով ջրօգտագործումը հանրապետությունում սկսվել է 5—6 տարի առաջ։ Ներկայումս գործող 16 ձկնաբուծական գործարանները վերցնում են 141 մլն խմ ջուր, որի ավելի քան 30 տոկոսը գոլորշիանում է։ Իսկ եթե հաշվի առնենք նաև այն հանգամանքը, որ բուսաբուծության վեգետացիան ու ձկնաբուծության ժամանակաշրջանը գրեթե համընկնում են, ապա պարզ կդառնա, որ լճակային ձկնաբուծության օգտագործած ջուրը անդառնալիորեն կորչում է։

Հանրապետության արդի և հեռանկարային ջրատնտեսական հաշվեկշիռները ցույց են տալիս, որ դրանք խիստ լարված են։ Արդեն այժմ մենք ջրի զգալի պակաս ենք զգում։ Այստեղ պետք է նշել նաև այն հանգամանքը, որ ջրային ռեսուրսները խիստ անհավասարաչափ են բաշխված ինչպես հանրապետության տարածքում, այնպես էլ տարվա ընթացքում։ Այս ամենը լուրջ խնդիրներ են դնում մեր առջև՝ ունեցած ազքատիկ ռեսուրսներն արդյունավետությամբ օգտագործելու առումով։

# ՄԻԱՍՆԱԿԱՆ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ

ԿԻԵՎԻ «ԴՆԻՊՐՈ» հրատարակչությունը լույս է ընծայել Հենրիկ Լիլոյանի **Վերածնված Հայաստանի կուլտուրան** գիրքը՝ ուկրաիներեն: Այն հանգամանալի, ընդգրկուն ակնարկ է սովետական իշխանության տարիներին հայկական կուլտուրայի համակողմանի զարգացման, այն մասին, թե ինչպես, կենսագործելով կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունը, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում հայ ժողովուրդը ստեղծել է նոր, բարձր տիպի կուլտուրա՝ սոցիալիստական կուլտուրա: «...սովետական իշխանության հաղթանակը փրկեց հայ ազգի հնամենի կուլտուրան,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— սոցիալիզմի հաղթանակը վերածնեց այդ տաղանդավոր ժողովրդի հոգևոր կյանքը, լավագույն պայմաններ ստեղծեց նրա բազմակողմանի ծաղկման համար»: Այս խորիմաստ խոսքերն իրենց վառ արտահայտությունն են գտել Հ. Լիլոյանի գրքում:

Առանձին գլուխներում հեղինակը ներկայացնում է հայկական կուլտուրայի բոլոր բնագավառները— ժողովրդական կրթությունը և կուլտուր-լուսավորական հաստատությունները, գիտությունը, գրականությունը, թատրոնը, երաժշտությունը, կերպարվեստն ու ճարտարապետությունը, կինոն: Այդ գլուխները հագեցած են սովետահայ կուլտուրայի բուռն վերելքն արտացոլող փաստերով: Եվ չնայած այդ փաստերի մեծ մասը մեզ հայտնի է, այնուամենայնիվ, դրանք վերստին համակում են մեզ հպարտության և հիացումի զգացումով սովետական վաթսուն տարիներին հայ ժողովրդի հոգևոր կյանքում ձեռք բերված վիթխարի հաջողությունների համար:

Հայկական սոցիալիստական կուլտուրայի հասումները, անշուշտ, դատարկ տեղում չեն առաջացել: Դրանք մեծապես խարսխվում են անցյալի ազգային ժառանգության վրա, հանդիսանում դրա լավագույն, առաջադիմական ավանդույթների շարունակությունն ու զարգացումը: Այդ ավանդույթներին է անդրադառնում հեղինակը ինչպես գրքի առանձին գլուխներում, նույնպես և դրանց նախորդող ընդհանուր, Հայաստանի պատմության հիմնական փուլերին և հայ ժողովրդի պատմական ճակատագրին ու կուլտուրային վերաբերող գլխում:

Գրքի արժանիքներից մեկն այն է, որ այնտեղ բազում համոզիչ օրինակներով ներկայացված է ժողովուրդների բարեկամության ներգործուն ուժը, նրանց համագործակցությունն ու փոխօգնությունը կուլտուրական շինարարության բնագավառում, ինչպես և ազգամիջյան հաղորդակցման այլ ոլորտներում: Հեղինակը հատուկ ուշադրություն է նվիրում ռուս և ուկրաինական ժողովուրդների հետ հայ ժողովրդի ունեցած փոխադարձ կապերի բացահայտմանը:

Ինչպես հայտնի է, հայ և ուկրաինական ժողովուրդների բարեկամությունն ունի պատմական խոր արմատներ: Անցյալում, XI դարից սկսած, տասնյակ հազարավոր հայեր, որոնք հարկադրված են եղել թողնել օտարերկրյա զավթիչների ամայացնող արշավանքներին ենթարկված իրենց հայրենիքը, ապաստան են գտել ուկրաինական բարեբեր հողում: Հայկական գաղութներ հիմնվեցին Կիևում, Ղրիմի քաղաքներում, այնուհետև՝ Լվովում, Կամենեց-Պոդոլսկում, Լուցկում և այժմյան Ուկրաինայի այլ վայրերում: Հետագայում ևս, հատկապես 1915 թվականին թուրքերի կողմից արևմտահայերի կոտորածներից հետո, հայ գաղթականներն ապաստան գտան Ուկրաինայում:

Հյուրընկալ Ուկրաինային հայերը հատուցեցին իրենց աշխատանքով, նվիրաբերեցին նրան իրենց գիտելիքներն ու ընդունակությունները, պատասխանեցին սիրով ու երախտագիտությամբ: Այդ զգացմունքների դրսևորումներից է հայերի ուշադրությունն ու հետաքրքրասիրությունը ուկրաինական ժողովրդի կյանքի, հատկապես գրականության նկատմամբ: Հայերի և ուկրաինացիների համատեղ կյանքը, բարիդրացիական հարաբերությունները, համատեղ պայքարն ընդհանուր թշնամիների դեմ արտացոլվել են հայ և ուկրաինական տարեգրություններում, ժողովրդական բանահյուսության մեջ:

Այստեղից և սկիզբ է առնում հայ-ուկրաինական գրական կապերի պատմությունը: Սակայն մի քանի դար շարունակ այդ կապերը տարածական առումով սահմանափակ էին,



դրանք զարգանում էին հիմնականում Ուկրաինայի սահմաններում: Այն ժամանակներում, ընդհուպ մինչև XIX դարը, ընդհանուր առմամբ գոյություն չի ունեցել ստեղծագործական փոխազդեցություն Ուկրաինայի և Հայաստանի միջև, քանի որ տարածված չէր փոխազդեցության այնպիսի կարևորագույն միջոց, ինչպիսին է գեղարվեստական թարգմանությունը:

Հայ գրականությունից կատարված ուկրաիներեն առաջին թարգմանությունները հրապարակ են եկել սոսկ անցյալ դարի վերջին: Դրանք կապված են ականավոր հեղափոխական-բանաստեղծ Պավել Գրաբովսկու անվան հետ. նա թարգմանել է Ռ. Պատկանյանի, Ս. Շահազիզի, Հ. Հովհաննիսյանի, Ալ. Ծատուրյանի, Հովհ. Թումանյանի, Ավ. Իսահակյանի, Չարենցի՝ ոգով ու տրամադրություններով իր սրտին մոտ մի շարք բանաստեղծություններ: Հայ ընթերցողի առաջին ծանոթությունը ուկրաինական գրականության հետ տեղի է ունեցել փոքր-ինչ վաղ՝ 1879 թվականին, երբ «Բազմավեպ» հանդեսի էջերում հրապարակվեցին ուկրաինական մեծ բանաստեղծ Տարաս Շևչենկոյի մի քանի բանաստեղծությունների թարգմանությունները և ծավալուն մի ակնարկ նրա կյանքի ու ստեղծագործության վերաբերյալ: Հայկական մամուլում հետագայում ևս հրապարակվել են հոդվածներ Տարաս Շևչենկոյի մասին, ինչպես և նրա բանաստեղծությունները՝ թարգմանաբար: Թարգմանվում էին ուկրաինացի այլ գրողների ստեղծագործություններ ևս: Հայ-ուկրաինական գրական կապերի այս վկայությունները, սակայն, նախահեղափոխական շրջանում սակավադեպ էին և տարերային բնույթ էին կրում:

Սովետական տարիներին կուլտուրաների բարեկամության պատմության մեջ սկսվեց որակական նոր փուլ, մեր եղբայրական հանրապետությունների գրականությունների լավագույն հաջողությունների թարգմանության, մասսայականացման գործը դարձավ սիստեմատիկ, ստացավ պետական նշանակություն:

Մեր կուլտուրաների եղբայրության երկնակամարի ամենափայլուն աստղը հանդիսացավ ուկրաինացի մեծ բանաստեղծ, սովետական բազմազգ պոեզիայի հիմնադիրներից մեկը՝ Պավլո Տիչինան: Դեռևս 20-ական թվականներին նա սկսեց ուսումնասիրել հայոց լեզուն և թարգմանել հայ պոետներին: Հաճախ է նա եղել Հայաստանում, անձնական բարեկամական կապեր է հաստատել մեր մշակույթի ականավոր գործիչների հետ: Նրա գրչին են պատկանում հայ դասական և ժամանակակից պոեզիայի, արձակի և դրամատուրգիայի բազմաթիվ ստեղծագործությունների թարգմանություններ, ինչպես և հոդվածներ՝ նվիրված Հայաստանին, Մեսրոպ Մաշտոցին, Հովհաննես Հովհաննիսյանին, Մարտիրոս Սարյանին: Հայ ժողովրդի անկեղծ բարեկամն էր նա, նրա կուլտուրայի անխոնջ պրոպագանդիստը: Ահա ինչու Սովետական Հայաստանում համընդհանուր հարգանք ու սեր են տածում Պավլո Տիչինայի նկատմամբ, նրա անունը դարձել է մեր ժողովուրդների, մեր կուլտուրաների հոգևոր միասնության խորհրդանիշ:

Հայ գրականության մեծ բարեկամն էր ուկրաինական ականավոր պոետ Մաքսիմ Ռիլսկին: Հայկական պոեզիայից, մասնավորապես Ավետիք Իսահակյանից և Եղիշե Չարենցից կատարած նրա հույժ գեղարվեստական թարգմանությունները, նրա խորիմաստ ու ինքնատիպ հոդվածները այդ բանաստեղծների մասին, Հայաստանին նվիրված ոգեշունչ բանաստեղծությունները մեծարժեք ավանդ են հայ-ուկրաինական գրական կապերի զարգացման մեջ:

Ուկրաինայում հայ գրականության պրոպագանդման գործում մեծ են սքանչելի բանաստեղծ Լեոնիդ Պերվոմայսկու՝ հիանալի շատ բանաստեղծությունների փայլուն թարգմանչի և Հայաստանի մասին գրված ջերմ հոդվածների հեղինակի ծառայությունները: Ավելի քան քառորդ դար հայ գրականության մասսայականացման գործում բեղմնավոր իր գործունեությունն է ծավալում Տիչինայի ավանդույթների հավատարիմ շարունակող, բանաստեղծ և թարգմանիչ Վիկտոր Կոչևսկին:

Հայ-ուկրաինական գրական կապերը հատկապես բուռն ծավալվեցին հետպատերազմյան տասնամյակներին: Ուկրաինացի ընթերցողի սեփականությունը դարձան Հովհ. Թումանյանի, Ալ. Շիրվանզադեի, Ավ. Իսահակյանի, Ե. Չարենցի, Ա. Բակունցի, Ա. Խնկոյանի, Ստ. Զորյանի, Ն. Զարյանի, Գ. Սարյանի, Հ. Քոչարի, Գ. Սևունցի, Վ. Անանյանի, Աղավնու, Ա. Պապայանի, Պ. Սևակի, Հ. Մաթևոսյանի, Վ. Պետրոսյանի, Գ. Էմինի, Մ. Գալշոյանի և այլոց ստեղծագործությունները՝ առանձին գրքերով:

Մեզ մոտ՝ Հայաստանում ուկրաինական, ինչպես և եղբայրական այլ գրականությունների թարգմանության ու հրապարակման գործը առավել ծավալվեց 30-ական թվականներին, հատկապես գրողների համամիութենական առաջին համագումարից հետո: Ելույթ ունենալով այդ համագումարում՝ Եղիշե Չարենցն ասաց. «Մենք՝ Սովետական Միության այսօրվա գրողներս, պետք է իմանանք իրար ո՛չ միայն երկու-երեք պատահական թարգմանությունների միջոցով, այլ, որ ամենագըլխավորն է, ստեղծագործական փորձի կենդա-

նի փոխանակման ճանապարհով: Ես գիտեմ, որ թարգմանելով ռուս կամ ուկրաինացի լավագույն պոետներին, ո՛չ միայն նպաստում եմ նրանց ազդեցության ոլորտի ընդլայնմանը, այլ ինքս սովորում եմ նրանցից»: Համագումարից կարճ ժամանակ անց հրատարակվեցին արձակագիրներ Իվան Կուլիկի, Յուրի Յանովսկու, դրամատուրգ Իվան Կոչերգայի գործերը: 1939 թ. լույս տեսավ Շևչենկոյի **Կոբզարի** առաջին հայկական հրատարակությունը՝ Գեղամ Սարյանի թարգմանությամբ, որը հետագայում երկու անգամ վերահրատարակվեց:

Հետագա տարիներին առանձին հրատարակություններով լույս տեսան Գ. Սկովորոդայի, Ի. Ֆրանկոյի, Լ. Ուկրաինկայի, Պ. Տիչինայի, Մ. Ռիլսկու, Ա. Կոռնեյչուկի, Օ. Գոնչարի, Ն. Ռիբակի, Մ. Ստելմախի, Լ. Պերվոմայսկու, Պ. Վորոնկոյի, Ա. Լևադայի, Վ. Կոչևսկու, Բ. Օլեյնիկի, Ի. Դրաչի և այլոց գրքերը, **Ուկրաինական քնար** և **Ուկրաինական դասական գրողների պատմվածքները** ժողովածուները: Հայկական բեմերում ներկայացվեցին Ա. Կոռնեյչուկի, Յա. Գալանի, Վ. Մինկոյի, Մ. Զարուդնու պիեսները: Ուկրաինական գրողներին հաջող են թարգմանել Գ. Սարյանը, Ս. Կապուտիկյանը, Գ. Էմինը, Հ. Հովհաննիսյանը, Վ. Դավթյանը, Մ. Մարգարյանը, Ա. Սարոյանը, Լ. Միրիջանյանը, Հ. Թումանյանը, Վ. Կարենցը, Ռ. Դավոյանը, Ա. Սահակյանը, Լ. Դուրյանը և ուրիշներ:

Մեր երկու գրականությունների փոխազդեցությունն ու փոխհարստացումը նորովի խըթանվեց հատկապես 70-ական թվականներին, Ուկրաինայում տեղի ունեցած հայկական գրականության (1973 թ.) և Հայաստանում՝ ուկրաինական գրականության (1977 թ.) տասնօրյակների առնչությամբ: Այն ժամանակ Կիևում լույս տեսան հայկական պոեզիայի և արձակի կոլեկտիվ ժողովածուներ, Երևանում՝ ուկրաինական պոետների և արձակագիրների համանման ժողովածուներ և մի քանի այլ գործեր: Իսկ 1980 թ., Սովետական Հայաստանի 60-ամյակի առիթով, Կիևում տպագրըվեց **Հայ սովետական պոեզիայի անթոլոգիան**, ուր ներկայացված է տարբեր սերունդների ավելի քան հիսուն հայ պոետների ստեղծագործությունը: Ավելի քան հինսուն թարգմանիչներ՝ Սովետական Ուկրաինայի համարյա բոլոր լավագույն պոետներն են մասնակցել այդ անթոլոգիայի հրատարակմանը:

Հայ-ուկրաինական գրական բարեկամությունը մեր ժողովուրդների փոխադարձ կուլտուրական կապերի փառավոր տարեգրության ամենապայծառ էջերից է: Ահա թե ինչու Հ. Լիլոյանի գրքում զգալի տեղ է հատկացված այդ կապերին:

**Գ. Ս. ԹԱԹՈՍՅԱՆ**



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе 2.
Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի՝ 20.10.82 թ.: Ստորագրված է տպագրության՝ 18.11.82 թ.: ՎՖ 06286: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15.232: Պատվեր 2271:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2

## С О Д Е Р Ж А Н И Е